# ԻՍԼԱՄԻ ԸՆԿԱԼՄԱՆ ՀԱԿԻՐՃ ՊԱՏԿԵՐԱԶԱՐԴ ՈՒՂԵՑՈՒՅՑ



Իբրահի մ

# ԻՍԼԱՄԻ ԸՆԿԱԼՄԱՆ ՀԱԿԻՐՃ, ՊԱՏԿԵՐԱԶԱՐԴ ՈՒՂԵՑՈՒՅՑ

Երկրորդ Հրատարակություն

## Ի.Ա Իբրահիմ

***Ընդհանուր Խմբագիրներ:***

Դոկ. Ուիլյամ (Դաուդ) Փիչի

Մայքլ (Աբդուլ-Հակիմ) Թոմաս

Թոնի (Աբու Խալիլ) Սիլվեսթեր

Իդրիս Փալմեր

Ջամաալ Զարաբոզո

Ալի Ալ Թիմիմի

***Գիտական Խմբագիրներ:***

Պրոֆեսոր Հարոլդ Ստյուարտ Քուոֆի

Պրոֆեսոր Ֆ.Ա. Սթեյթ

Պրոֆեսոր Մահջուբ Օ. Տահա

Պրոֆեսոր Ահմեդ Ալլամ

Պրոֆեսոր Սալման Սուլթան

Համագործակցող պրոֆեսոր Հ.Օ.Սինդի

Թարգմանությունը:

**EUROPEAN ISLAMIC RESEARCH CENTER (EIRC)**

& Աննա Ռ. Հակոբ

Ստուգող հանձնաժողով:

Աբու Առամ

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ


ՆԱԽԱԲԱՆ

ԳԼՈՒԽ 1

ԻՍԼԱՄԱԿԱՆ ՃՇՄԱՐՏՈՒԹՅԱՆ ՈՐՈՇ ՎԿԱՅՈՒԹՅՈՒՆՆԵՐ

(1) Սուրբ Ղուրանի Գիտական հրաշքները

Ա.Ղուրանը Մարդկային Սաղմաբանական զարգացման մասին

Բ. Ղուրանը Լեռների մասին

Գ. Ղուրանը Տիեզերքի մասին

Դ. Ղուրանը Ուղեղի մասին

Ե. Ղուրանը Ծովերի և Գետերի մասին

Զ. Ղուրանը Խորը Ծովերի և Ներքին Ալիքների մասին

Է. Ղուրանը Ամպերի մասին

Ը. Գիտնականների Մեկնաբանությունները Սուրբ Ղուրանի Գիտական Հրաշքների մասին

(2) Մեծ Մարտահրավերը, Ներկայացնելու Մեկ Գլուխ, որը համապատասխանում է Սուրբ Ղուրանի գլուխներին

(3) Աստվածաշնչյան Մարգարեությունները Մուհամմեդի (Խ.Ա.Ո.Ն) , Իսլամի Մարգարեի մասին

(4) Ղուրանական տարբերակները , որոնք նշում են հետագա իրադարձությունները

(5) Մարգարե Մուհամմեդի (Խ.Ա.Ո.Ն) Ներկայացրած Հրաշքները

(6) Մուհամմեդի (Խ.Ա.Ո.Ն) պարզ կյանքը

(7) Իսլամի բացառիկ Աճը

## Գլուխ 2

## Իսլամի Որոշ Շահերը

(1) Հավերժ Դրախտի Դուռը

(2) Փրկությունը Դժոխքի Կրակից

(3) Իրական Երջանկություն և Ներքին Խաղաղություն

(4) Նախկին Մեղքերի Թողությունը

## Գլուխ 3

## Իսլամի ընդհանուր Տեղեկությունները

**Ի՞նչ է Իսլամը**

**Իսլամական որոշ հիմնական հավատքները**

(1) Հավատք Աստծուն

(2) Հավատք Հրեշտակներին

(3) Հավատք Աստծո հայտնած գրքերին

(4) Հավատք Աստծո Մարգարեներին և Առաքյալներին

(5) Հավատք Դատաստանի Օրվան

(6) Հավատք Ալ-Քադարին

**Արդյո՞ք գոյություն ունի մեկ այլ Սուրբ աղբյուր, բացի Ղուրանից**

**Մարգարե Մուհամմեդի (Խ.Ա.Ո.Ն) օրինակները և պատումները**

**Ի՞նչ է ասում Ղուրանը Դատաստանի Օրվա մասին**

**Ի՞նչպես դառնալ մահմեդական:**

**Ինչի՞ մասին է Ղուրանը:**

**Ո՞վ է Մարգարե Մուհամմեդը (Խ.Ա.Ո.Ն)**

**Ո՞րն է Իսլամի տարածման ազդեցությունը գիտական զարգացմանը**

**Ո՞րն է Մահմեդականների հավատքը Հիսուսին**

**Ի՞նչ է ասում Իսլամը Աhաբեկչության մասին:**

**Մարդու Իրավունքները և Արդարությունը Իսլամի մեջ**

**Ո՞րն է կնոջ Դիրքը ըստ Իսլամի**

**Ընտանիքը Ըստ Իսլամի**

**Ինչպե՞ս են մահմեդականները վերաբերվում տարեցներին**

**Ո՞րոնք են Իսլամի հինգ սյուները**

- (1) **Հավատքի վկայությունը**
- (2) **Աղոթք**
- (3) **Բարեգործություն, Զաքյաթ**
- (4) **Պահք Ռամադան ամսվա ընթացքում**
- (5) **Ուխտագնացություն Մեքքա**

**Իսլամը Ամերիկայի Միացյալ Նահանգներում**

**Իսլամի Լրացուցիչ տեղեկություններ**

**Գրքի Մեկնաբանություններ և առաջարկություններ**

**Իսլամի հետագա ընթերցումը**

**Քաղվածք**

# Նախաբան

Այս գիրքը հանդիսանում է Իսլամի ընկալման հակիրճ ուղեցույցը: Այն բաղկացած է երեք գլուխներից:

Առաջին գլուխ. «**Իսլամական ճշմարտության որոշ վկայություններ**» –ը պատասխանում է մի քանի կարևոր հարցերի, ինչպիսիք են.

- Արդյո՞ք , իրապես Ղուրանը հանդիսանում է Աստծո գրական խոսքը, որը Նա հայտնել է
- Արդյո՞ք Մուհամմեդը (Խ.Ա.Ո.Ն)[1] հանդիսանում է Աստծո իրական մարգարեն:
- Արդյո՞ք Իսլամը հանդիսանում է Աստծո կրոնը:



Տվյալ գլուխը նշում է վեց տիպի վկայություն.

**1) Սուրբ Ղուրանի Գիտական Հրաշքները.**

Տվյալ հատվածը պատկերազարդ քննարկում է վերջերս հայտաբերած գիտական փաստերը, որոնք նշել է տասնչորս դար առաջ հայտնած Սուրբ Ղուրանը:

**2) Մեծ մարտահրավեր ներկայացնելու Սուրբ Ղուրանի գլուխներին համապատասխան մեկ գլուխ.**

Ղուրանի մեջ Աստված մարտահրավեր է նետում մարդուն, ներկայացնել Ղուրանի գլուխներին համապատասխան մեկ գլուխ: Ղուրանի հայտնության ժամանակից, տասնչորս դար ի վեր, մինչ օրս, ոչ ոք ի վիճակի չէ ընդունել այս մարտահրավերը, չնայած փաստի, որ Ղուրանի ամենափոքր գլուխը (գլուխ 108) բաղկացած է միայն տաս բառից:

**3) Իսլամի Մարգարե Մուհամմեդի (Խ.Ա.Ո.Ն) Գալստյան Աստվածաշնչյան Մարգարեությունները.**

Այս հատվածը քննարկում է Մարգարե Մուհամմեդի (Խ.Ա.Ո.Ն) գալստյան Աստվածաշնչյան մարգարեությունները:

**4) Ղուրանական տարբերակները, որոնք նշում են հետագայում տեղի ունեցող ապագա իրադարձությունները.**

Ղուրանը նշում է ապագա իրադարձություններ, որոնք տեղի են ունենում հետագայում, օրինակ Պարսիկների հանդեպ Հռոմեացիների հաղթանակը:

---

[1] Արաբերեն այս խոսքերը վերծանվում են որպես. «Թող բարձրյալ Աստվածը նշի և պաշտպանի նրան անկատարելությունից»;

5) **5. Մարգարե Մուհամմեդի (Խ.Ա.Ո.Ն) ներկայացրած հրաշքները.**

Մարգարե Մուհամմեդը (Խ.Ա.Ո.Ն) ներկայացրել է շատ հրաշքներ, որոնց ականատես են եղել շատերը:

6) **Մուհամմեդի (Խ.Ա.Ո.Ն) Պարզ Կյանքը.**

Այս պարզորեն նշում է, որ Մուհամմեդը (Խ.Ա.Ո.Ն) կեղծ մարգարե չէր, ով հայտնեց մարգարեությունը իշխանություն, հզորություն և նյութական բարիք ստանալու նպատակով:

Այս վեց վկայություններից մենք եզրահանգում ենք, որ

- Ղուրանը պետք է որ հանդիսանա Աստծո խոսքը, որը Նա է հայտնել:
- Մուհամմեդը (Խ.Ա.Ո.Ն) իրոք մարգարե է, ում ուղարկել է Աստվածը:
- Իսլամը իրոք հանդիսանում է Աստծո կրոնը:

Եթե մենք ցանկություն ենք հայտնում գիտակցել, թե արդյոք կրոնը հանդիսանում է իրական թե կեղծ, մենք չպետք է հիմնվենք մեր զգացմունքների, զգացողությունների կամ սովորույթների վրա: Հակառակը, մենք պետք է հիմնվենք մեր բանականության և գիտակցության վրա: Երբ Աստված ուղարկեց մարգարեներին, Նա նրանց աջակցեց հրաշքներով և վկայությամբ, որը ապացուցեց, որ նրանք Աստծո ուղարկած իրական մարգարեներն էին և ուստի կրոնը , որը նրանք բերեցին, ճշմարիտ է:

Երկրորդ գլուխ. «**Իսլամի որոշ առավելությունները**» նշում է այն առավելությունները, որոնք Իսլամը ներկայացնում է անհատներին, օրինակ.

1) Հավերժ Դրախտի Դուռը
2) Դժոխքի Կրակի Փրկությունը
3) Իրական երջանկությունը և ներքին խաղաղությունը
4) Բոլոր նախկին մեղքերի թողությունը

Երրորդ գլուխ «**Ընդհանուր տեղեկություն Իսլամի մասին**», ներկայացնում է ընդհանուր տեղեկություններ, ուղղում է որոշ թյուրիմացությունները և պատասխանում է որոշ ընդհանուր հարցերի, ինչպիսիք են.

- Ի՞նչ է ասում Իսլամը ահաբեկչության մասին:
- Ո՞րն է կնոջ դիրքը Իսլամում:

# ԳԼՈՒԽ 1

# ԻՍԼԱՄԱԿԱՆ ՃՇՄԱՐՏՈՒԹՅԱՆ ՈՐՈՇ ՎԿԱՅՈՒԹՅՈՒՆՆԵՐ

Աստված Իր վերջին Մարգարե Մուհամմեդին (Խ.Ա.Ո.Ն) աջակցել է շատ հրաշքներով և վկայություններով, որոնք ապացույց են հանդիսանում, որ նա Աստծո իրական Մարգարեն է: Նույնպես, Աստված շատ հրաշքներով աջակցել է Իր վերջին հայտնված գիրքին, Սուրբ Ղուրանին, որը ապացույց է հանդիսանում, որ այս Ղուրանը Աստծո գրական խոսքն է, որը Նա հայտնել է և որ ոչ մի մարդ արարած չի կայանում դրա հեղինակը: Հետևյալ գլուխը քննարկում է այս վկայություններից մի քանիսը:

## (1) Սուրբ ղուրանի գիտական հրաշքները

Ղուրանը հանդիսանում է Աստծո գրական խոսքը, որը Նա հայտնել է Իր Մարգարե Մուհամմեդին (Խ.Ա.Ո.Ն) Գաբրիել Հրեշտակի միջոցով: Մուհամմեդը (Խ.Ա.Ո.Ն) մտապահում և այնուհետ թելադրում էր իր ուղեկցորդներին: Իրենց հերթին նրանք էլ մտապահում էին, գրառում և կրկնում էին Մարգարե Մուհամմեդի (Խ.Ա.Ո.Ն) հետ: Ավելին, Մարգարե Մուհամմեդը (Խ.Ա.Ո.Ն) տարին մեկ անգամ կրկնում էր Ղուրանը Գաբրիել Հրեշտակի հետ և իր կյանքի վերջին տարվա ընթացքում, երկու անգամ: Ղուրանի հայտնության պահից մինչ օրս, շատ Մահմեդականներ տառ առ տառ մտապահում են ամբողջ Ղուրանը: Նրանցից ոմանք մինչ տաս տարեկան հասակը ,մտապահում են ամբողջ Ղուրանը: Դարերի ընթացքում Ղուրանի ոչ մի տառ անգամ չի ենթարկվել փոփոխության:



Ղուրան

Ղուրանը, որը հայտնվել է տասնչորս դար առաջ, նշում է փաստեր, որոնք գիտնականները միայն վերջերս են հայտնել կամ ապացուցել: Անկասկած, սա ապացուցում է, որ Ղուրանը պետք է լինի Աստծո գրական խոսքը, որը Նա հայտնել է Մարգարե Մուհամմեդին (Խ.Ա.Ո.Ն) և որ Ղուրանի հեղինակը Մուհամմեդը (Խ.Ա.Ո.Ն) կամ որևէ այլ անհատը չէ: Սա

նույնպես ապացույց է հանդիսանում, որ Մուհամմեդը (Խ.Ա.Ո.Ն) Աստծո ուղարկած ճշմարիտ Մարգարեն է: Պատճառաբանությունից զուրկ է այն փաստը, որ տասնչորս դար առաջ որևէ մեկը կարող էր տեղյակ լինել փաստերին, որոնք հայտաբերել կամ ապացուցել են միայն վերջերս ընդլայնված սարքավորումների և բարդ գիտական մեթոդների միջոցով: Հետևում են որոշ օրինակներ.

## Ա. Ղուրանը մարդկային սաղմի զարգացման մասին.

Սուրբ Ղուրանի մեջ Աստված խոսում է մարդու սաղմային զարգացման փուլերի մասին.

**«Մենք արարել ենք մարդուն կավից: Այնուհետ, Մենք արարել ենք նրան որպես կաթիլ կարգավորված վայրում, ամուր հաստատված: Այնուհետ, Մենք արարել ենք կաթիլը (ալաքահ) թանձրուկի, կախուկի և արյան գնդի այնուհետ Մենք արարել ենք ալաքահը մուղդահի թանձրուկի ...»**[2] **(Ղուրան 23:12-14)**

Գրականորեն, արաբերեն (ալաքահ) բառը ունի երեք իմաստ.

1. Տզրուկ 2. Կախուկ և 3. Արյան գունդ

Համեմատություն անց կացնելով տզրուկը սաղմի ալաքահի փուլի ընթացքում, մենք գտնում ենք երկուսի[3] նմանություն, ինչպես մենք տեսնում ենք 1 պատկերի մեջ: Նույնպես, այս փուլում սաղմը սնունդը ծեռք է բերում մոր արյունից, նմանվելով տզրուկի, որը սնվում է մյուսների արյամբ:[4]




---

[2] Խնդրում ենք հաշվի առեք, որ Ղուրանի հատվածները հանդիսանում են միայն իմաստային թարգմանություն: Ղուրանը ինքնին արաբերեն լեզվով է:
[3] «Զարգացող Մարդը» Մուր և Փերսաուդ 5-րդ հրատարակություն էջ.8
[4] «Մարդկային Զարգացումը, ինչպես նկարագրել են Ղուրանը և Սուննան», Մուր և այլոք էջ.36

Պատկեր 1 Պատկերները պարզաբանում են ալաքայի փուլում գտնվող տզրուկի և մարդկային սաղմի արտաքինի նմանությունները:(Տզրուկը պատկերված է Մարդկային Զարգացման տեսանկյունից, ինչպես նկարագրել է Ղուրանը և Սուննան, Մուրը և այլոք էջ. 37,փոփոխված Կենդանաբանության Փոփոխված Սկզբունքներից Յիքմանի և այլոց: Սաղմը պատկերված Մարդկային Զարգացման կերպով, Մուր և Փերսաուդ, 5-րդ հրատարակություն, էջ.73)




Պատկեր 2. Այստեղ մենք կարող ենք տեսնել մոր արգանդում ալաքայի փուլում գտնվող սաղմի կասեցման սխեման: (Զարգացող Մարդը, Մուր և Փերսուադ 5-րդ հրատարակություն, էջ.66)

է




Պատկեր 3. Այս լուսապատկերի մեջ մենք կարող ենք տեսնել մոր արգանդի մեջ գտնվող մոտ 15 օրական սաղմի կասեցումը ալաքայի փուլում, որը նշել պատկեր 2: Սաղմի չափսը մոտ 0.6 միլիմետր է: (Զարգացող Մարդը, Մուր 3-րդ հրատարակություն, էջ.66 Յիսթոլոգիա, Լիսոն և Լիսոն)

Ալաքահ բառի երկրորդ իմաստն է «կպչած, կապված»: Սա մենք կարող ենք տեսնել 2 և 3 պատկերների մեջ, մոր արգանդում սաղմի կպչունությունը, կախվածությունը ալաքահի փուլի մեջ:

Ալաքահ բառի երրորդ իմաստը կարելի է թարգմանել որպես «արյան գունդ»:Մենք գտնում ենք, որ ալաքահի փուլի ընթացքում սաղմի

արտաքին տեսքը և իր պարկիկները նման են արյան գնդի: Սա պայմանավորված է համեմատական արյան մեծ քանակությամբ, որը տվյալ փուլում ներկա է սաղմի մեջ [5] (տես պատկեր 4): Նույնպես տվյալ փուլում արյունը մինչ երրորդ շաբաթվա ավարտը[6], չի շրջանառվում սաղմի մեջ: Ուստի,այս փուլում, սաղմը նման է արյան գնդի:




Պատկեր 4. Ալաքայի փուլում գտնվող սաղմի պարզունակ սրտանոթային համակարգի գծապատկերը: Սաղմի արտաքին տեսքը և պարկիկները նմանվում են արյան գնդի, շնորհիվ սաղմի մեջ առկա արյան հսկայական քանակության: (Զարգացող Մարդը, Մուր, 5-րդ հրատարակություն, էջ.65)

Այսպիսով, ալաքահ բառի երեք իմաստները համապատասխանում են այդ փուլում գտնվող սաղմի նկարագրությանը:

Հաջորդ փուլը, որը նկարագրել է տարբերակը հանդիսանում է մուղգահի փուլը: Արաբերեն մուղգահ նշանակում է «ծամած նյութ»: Եթե որևէ մեկը վերցնի մաստակ և ծամի այն և այնուհետ համեմատություն անց կացնի մուղգահի փուլում գտնվող սաղմի հետ, ապա կարող է հանգել այն եզրակացության, որ այդ փուլում գտնվող սաղմը արտաքինով նման է ծամած նյութի: Ի շնորհիվ սաղմի ետնամասում գտնվող սեգմենտների, որոնք «ինչ որ չափով նման են ծամած նյութի վրա գտնվող ատամի հետքերի»:[7]( տես պատկեր 5 և 6)

Ինչպե՞ս էր կարող Մուհամմեդը (Խ.Ա.Ո.Ն) տեղյակ լինել այս ամենի մասին տասնչորս հարյուր տարի առաջ, եթե գիտնականները միայն վերջերս են հայտնագործել սա, կիրառելով ժամանակակից սարքավորումները և հզոր մանրադիտակները,որոնք այդ ժամանակահատվածում գոյություն չեն ունեցել:

---

[5] Մարդկային Զարգացումը, ինչպես նկարագրել է Ղուրանը և Սուննան, Մուր և այլոք էջ.37-38

[6] Զարգացող Մարդը Մուր և Փերսուադ, 5-րդ հրատարակություն, էջ.65

[7] Զարգացող Մարդը, Մուր և Փերսուադ, 5-րդ հրատարակություն, էջ.8

Լուվենհոքը հանդիսանում է առաջին գիտնականը, ով Մուհամմեդից (Խ.Ա.Ո.Ն) 1000 տարի անց, 1677 թվականին, հետազոտեց մարդկային սերմնահեղուկի բջիջները (սպերմատոզոիդները), կիրառելով բարելավված մանրադիտակը: Նրանք սխալմամբ կարծեցին, որ սերմնահեղուկի բջիջները պարունակում են մանրանկար, ներկայացնելով մարդ արարածը, որը աճել է, անցնելով իգական սեռուղիով:[8]

Պրոֆեսոր Էմերիթուս Քեյթ Լ. Մուրը հանդիսանում է անատոմիայի և սաղմաբանության ոլորտների աշխարհի ամենահայտնի գիտնականը և «Զարգացող Մարդը» գրքի հեղինակը, որը թարգմանվել է ութ լեզուներով: Այն հանդիսանում է գիտական քաղվածք և ԱՄՆ-ի հատուկ հանձնաժողովը այն ընտրել է որպես մեկ անհատի հեղինակած լավագույն գիրք: Դոկտոր Քեյթ Մուրը հանդիսանում է Տորոնտոյի համալսարանի Անատոմիայի և Բջջային Կենսաբանության պատվավոր պրոֆեսոր, Տորոնտո, Կանադա: Այնտեղ, նա հանդիսանում էր նաև Բժշկական Բաժանմունքի Հիմնական Գիտության Դեկանը և 8 տարի շարունակ Անատոմիայի Բաժանմունքի ղեկավարը: 1984 թվականին, նա ստացավ Կանադայի անատոմիական ոլորտում ամենատարբերվող պարգևը, որը ներկայացնում է Ջ.Ս.Բ Մեծ Պարգևը Անատոմիստների Կանադական ընկերությունը: Նա ղեկավարել է շատ միջազգային կազմակերպություններ, ինչպիսիք են Անատոմիստների Կանադական և Ամերիկյան Կազմակերպությունը և Կենսաբանական Գիտության Խորհրդի Միությունը:



Պատկեր 5 Մուղգահ փուլի մեջ գտնվող 28 օրական սաղմի լուսանկարը: Այս փուլում գտնվող սաղմը նման է ծամած նյութի, որովհետև սաղմի ետնամասի հատվածում գտնվող սոմիթները ինչ որ չափով նմանվում են ծամած նյութի ատամի հետքերի: Սաղմի չափը 4 միլիմետր է: (Զարգացող Մարդը, Մուր և Փերսուադ, 5-րդ հրատարակություն, էջ.82, Պրոֆեսոր Հիդեո Նիշիմուրայից, Քյոթոյի Համալսարան, Քյոթո, Ճապոնիա):

[8] Զարգացող Մարդը Մուր և Փերսուադ, 5-րդ հրատարակություն էջ.9

Պատկեր 6 Երբ մենք համեմատություն ենք անց կացնում մուղգաhի փուլի մեջ գտնվող սաղմի արտաքինի և ծամած մաստակի միջև, մենք գտնում ենք նրանց նմանությունը:

Ա. Մուղգաhի փուլում գտնվող սաղմի պատկերը: Այստեղ մենք կարող ենք տեսնել սաղմի ետնամասի հատվածում գտնվող սոմիթները, որոնք նման են ատամի հետքերին: (Զարգացող Մարդ, Մուր և Փերսուադ, 5-րդ հրատարակություն, էջ.79)

Բ. Ծամած մաստակի նկար:

1981 թվականին, Սաուդյան Արաբիայի Դամմամ քաղաքում տեղի ունեցած Յոթերրորդ Բժշկական Համագումարի ընթացքում, պրոֆեսոր Մուրն ասաց.

*«Ինձ համար մեծ երջանկություն է օգնել պարզաբանելու Ղուրանի մեջ զետեղված մարդու զարգացման հայտարարությունը: Ինձ համար պարզ է, որ այս հայտարարությունը Մուհամմեդին (Խ.Ա.Ո.Ն) ուղարկել է Աստվածը, քանի որ այս գիտելիքների մեծամասնությունը հայտնագործել են շատ դարեր անց: Սա ապացույց է հանդիսանում, որ Մուհամմեդը պետք է լինի Աստծո Մարգարեն»:*[9]

Ուստի, Պրոֆեսոր Մուրին ուղղեցին այս հարցը. *«Արդյո՞ք սա նշանակում է, որ դուք հավատում եք, որ Ղուրանը հանդիսանում է Աստծո խոսքը»:* Նա պատասխանեց. *«Ինձ համար դժվարություն չի ներկայացնում ընդունել այդ»:*[10]




Համագումարներից մեկի ընթացքում Պրոֆեսոր Մուրը հայտնեց.

*«...Քանի որ մարդու սաղմի փուլերը բարդ են, ի շնորհիվ զարգացման ընթացքում շարունակական փոփոխության, առաջարկվում է զարգացնել դասակարգման նոր համակարգ, կիրառելով*

[9] Մեկնաբանության աղբյուրը հանդիսա... Այցելեք www.islam-gude.com/ truth Պր... կրկնօրինակելու կամ դիտելու համար:
[10] «Սա է ճշմարտությունը» հոլովակը:

*պայմանները, որոնք նշել են Ղուրանը և Սուննան (Մուհամմեդի (Խ.Ա.Ո.Ն) խոսքերը և արարքները)։ Առաջարկվող համակարգը պարզ է, համապարփակ և հաստատում է ժամանակակից սաղմնաբանության գիտելիքները։ Վերջին չորս տարիների Ղուրանի և պատումների( ուղեկցորդների փոխանցած Մարգարե Մուհամմեդի (Խ.Ա.Ո.Ն) վստահելի զեկույցները) ինտենսիվ ուսումնասիրությունները, բացահայտել են մի համակարգ, որը կարող է պարզաբանել մարդկային սաղմը, որը զարմանալի է, քանի որ այն արձանագրել են Մ.Թ 7 դարում։ Չնայած Արիստոտելը, սաղմաբանության հիմնադիրը, գիտակցեց, որ վաղ սաղմը զարգացում է ապրում փուլերով, հիմք ունենալով 4-րդ դարում կատարած հավի ձվի ուսումնասիրությունները, նա չի տվել տվյալ փուլերի որևէ մանրամասնություն։ Որքանով հայտնի է սաղմաբանության պատմությունից, մինչ 20-րդ դարը, քիչ բան է հայտնի մարդու սաղմի փուլերի և զարգացման մասին։ Այդ իսկ պատճառով, Ղուրանի մեջ զետեղված մարդու սաղմի դասակարգումը, չի կարող հիմնվել 7-րդ դարի գիտական գիտելիքների վրա։ Միակ ողջամիտ եզրակացությունը այն է, որ այս նկարագրությունները Մուհամմեդին հայտնել է Աստվածը։ Նա չէր կարող տեղյակ լինել նմանատիպ մանրամասներին, քանի որ նա անգրաճանաչ անհատ էր, առանց որևէ գիտական փորձի»։*[11]

## **Բ. Ղուրանը լեռների մասին**

Երկիր անվանմամբ գիրքը հանդիսանում է աշխարհի շատ համալսարանների հիմնական տեղեկագիրքը։ Համահեղինակներից մեկն է պրոֆեսոր Էմերիթուս Ֆրանկ Փրեսը։ Նա հանդիսանում էր ԱՄՆ-ի նախկին նախագահ Ջիմի Քարթերի Գիտական խորհրդականը և 12 տարի Վաշինգտոնի Գիտությունների Ազգային Ակադեմիայի նախագահը։ Նրա գիրքը ասում է, որ լեռները ունեն ներքևում գտնվող արմատներ։[12] Այս արմատները խորապես ամրացված են գետնին, ուստի լեռները ունեն ցցի տեսք։ (տես հաջորդ էջի պատկերներ 7,8,9)։

Ահա, թե ինչպես է Ղուրանը նկարագրում լեռները։ Ղուրանի մեջ Աստված ասում է.

**«Արդյո՞ք Մենք չենք դարձրել երկիրը որպես մահճակալ և լեռները որպես ցցեր» (Ղուրան 78:6-7)**

[11] «Սա է ճշմարտությունը»։ Տես ծանոթագրությունը, հ.2 էջ.10

[12] Երկիրը, Փրեսս և Սիվեր, էջ.453 Նույնպես տես Երկրի Գիտությունը, Թարբուք և Լութգեն, էջ.157




Պատկեր 7. Լեռները ունեն խորը արմատներ երկրի մակերեսի տակ: (Երկիր Մամուլ և Սիվեր էջ.413)




Պատկեր 8 Սխեմատիկ բաժինը. Լեռները, ինչպես ցցեր ունեն խորը արմատներ, որոնք գտնվում են գետնի մեջ: (Երկրի Անատոմիա, Քայլլեուքս էջ.220)




Պատկեր 9. Մեկ այլ լուսանկար ցույց է տալիս, թե լեռները ինչպես ցցանման են, ի շնորհիվ իրենց խորը արմատների: (Երկրագիտություն Թարբուք և Լութգենս էջ.158)

Ժամանակակից երկրագիտությունը ապացուցել է, որ լեռները երկրի մակերեսի տակ ունեն խորը արմատներ (տես պատկեր 9 )և որ այդ արմատները կարող են մի քանի անգամ անցնել երկրի մակերեսին[13] նրանց բարձրությունից: Այսպիսով, ամենահարմար խոսքը, որը

[13] Ղուրանի մեջ Լեռների երկրաբանական գաղափարը: Էլ-Նագգար, էջ.5

նկարագրում է լեռները հիմնվելով այս տեղեկատվության վրա, «ցից» խոսքն է, քանի որ ցցերի ամենապատշաճ կայունությունը թաքնված է երկրի մակերեսի տակ:

Գիտության պատմությունը մեզ պատմում է, որ լեռների տեսությունը ունի խորը արմատները, որը ներկայացրել է միայն 1865 թվականին աստղագետ, պատվելի Սեր Ջորջ Այրին:[14]

Նույնպես, լեռները կարևոր դեր են խաղում երկրի կեղևը հաստատուն դարձնելու գործընթացում:[15] Նրանք հանդիսանում են երկրի ցնցման խոչընդոտը: Ղուրանի մեջ Աստված ասում է.

**«Եվ, Նա սահմանել է հաստատուն լեռներ երկրի վրա, այնպես, որ այն ձեր հետ չցնցվի...» (Ղուրան 16:15)**

Նմանապես, շերտերի տեկտոնիկայի ժամանակակից տեսությունը գտնում է, որ լեռները հանդիսանում են երկրի կարգավորիչը: Երկրի համար- լեռների կարգավորիչ լինելու դերի այս գիտությունը, նորովի սկսել են ընկալել 1960 վերջերից[16], շերտերի տեկտոնիկայի շրջանակներում:

Արդյո՞ք Մարգարե Մուհամմեդի (Խ.Ա.Ո.Ն) ժամանակաշրջանում որևէ մեկը կարող էր տեղեկություն ունենալ լեռների իրական կառուցվածքի մասին: Արդյո՞ք որևէ մեկը կարող էր պատկերացնել, որ լեռների կուռ զանգվածը, որը նա տեսնում է իր առջև ,ըստ էության տարածվում է երկրի խորքը և ունի արմատ, ինչպես հաստատում են գիտնականները: ժամանակակից երկրաբանությունը հաստատում է Ղուրանական տարբերակների իրավացիությունը:

## Գ. Ղուրանը տիեզերքի ծագման մասին

Ժամանակակից աստղաբանության գիտությունը իր հետազոտական կամ տեսական բնույթով, պարզորեն նշում է, որ ժամանակի մեկ հատվածում, ամբողջ տիեզերքը ոչինչ էր, ուղղակի «ծխի» ամպ (այսինքն անթափանց բարձր խիտ և տաք գազային կազմություն):[17] Սրանք հանդիսանում են տիպական ժամանակակից աստղաբանության անվիճելի սկզբունքները: Այժմ, գիտնականները կարող են դիտել նոր աստղեր, որոնք ձևավորվել են այդ «ծխի» մնացորդներից: (տես պատկերներ 10 և 11) Այս լուսավոր աստղերը, որոնք մենք տեսնում ենք գիշերը նման էին ամբողջ տիեզերքին, այդ «ծխային» նյութից: Ղուրանի մեջ Աստված ասում է.

**«Այնուհետ, Նա շրջել էր երկնքի, երբ այն ծուխ էր...» (Ղուրան 41:11)**

---

[14] Երկիր, Փրես և Սիվեր, էջ.435; Նույնպես տես Լեռների երկրաբանական գաղափարը Ղուրանի մեջ, էջ.5

[15] Լեռների երկրաբանական գաղափարը Ղուրանի մեջ. էջ.44-45

[16] Լեռների երկրաբանական գաղափարը Ղուրանի մեջ.էջ.5

[17] Առաջին Երեք Րոպեները, Տիեզերքի Ծագման ժամանակակից Տեսակետը, Վայնբերգ, էջ.94-105

Քանի որ երկիրը և երկինքները (արևը, լուսինը, աստղերը, մոլորակները, Ծիր Կաթին և այլն) ձևավորվել են միևնույն «ծխից», մենք եզրակացնում ենք, որ երկիրը և երկինքները հանդիսանում էին մեկ կապակցված ամբողջություն: Այնուհետ այս համասեռ «ծխից» կազմել և առանձնացրել են դրանք մեկը մյուսից: Ղուրանի մեջ Աստված ասում է.

**«Արդյո՞ք նրանք, ովքեր չեն հավատացել, տեղյակ չեն, որ երկիքները և երկիրը հանդիսանում էր մեկ կապակցված ամբողջություն, այնուհետ Մենք առանձնացրեցինք դրանք...» (Ղուրան 21:30)**

Դոկ. Ալֆրեդ Քրոները աշխարհի ամենաանվանի երկրաբաններից մեկն է: Նա հանդիսանում է Գերմանիայի Մայնի Յոհաննես Գութենբերգի Համալսարանի Երկրաբանության Հաստատության Երկրաբանական բաժանմունքի ղեկավարը և Երկրաբանության պրոֆեսորը: Նա ասաց.

*«Գիտակցելով, թե որտեղից էր եկել Մուհամմեդը... ես կարծում եմ համարյա անհնար է, որ նա ի վիճակի լիներ տեղյակ լինել այնպիսի բաներից, ինչպիսիք են տիեզերքի ընդհանուր ծագումը, որովհետև գիտնականները հայտնագործել են միայն վերջին մի քանի տարիների ընթացքում, բարդ և ժամանակակից տեխնոլոգիական մեթոդներով, որ սա է հանդիսանում դեպքը»:*[18]

Նույնպես նա ասաց. *«Ինչ որ մեկը, ով տեղյակ չէ միջուկային ֆիզիկայից չորս հարյուր տարի առաջ, իմ կարծիքով չէր կարող ունենալ այնպիսի դիրքորոշում, որպեսզի արտահայտեր իր իսկ միտքը, որ երկիրը և երկինքները ունեն միևնույն ծագումը»:*[19]



Պատկեր 10. Նոր աստղ, որը կազմված է գազի և փոշու ամպից (միգամածությունից), որը հանդիսանում է «ծխի» մնացորդներից մեկը, որից էլ կազմավորվել է ամբողջ տիեզերքը: (Տիեզերքի Ատլաս Հեթեր և Հենբեսթ էջ.50)

[18] Այս մեկնաբանության աղբյուրը հանդիսանում է 'Սա է Ճշմարտությունը' հոլովակը: Այցելեք www.islam-guide.com/ truth, որպեսզի կրկնօրինակեք տվյալ հոլովակը կամ դիտեք Պրոֆեսոր Ալֆրեդ Քրոների դասախոսությունները և մեկնաբանությունները առցանց:

[19] 'Սա է Ճշմարտությունը' Ձայնագրություն;



Պատկեր 11.Ծոցի միգամածությունը հանդիսանում է գազի և փոշու խառնուրդ, մոտ 60 լուսային տարվա լուսագծով: Այն արթնանում է իր ծավալի մեջ վերջերս ձևավորված նոր աստղերի ուլտրամանուշակագույն ճառագայթությամբ: (Հորիզոններ, Տիեզերքի Ուսումնասիրությունը, Սերմեր, Թիթեղ 9, Աստղագիտության ուսումնասիրությունների Համալսարանական Կազմակերպություններ):

## Դ. Ղուրանը ուղեղի մասին

Ղուրանի մեջ Աստված խոսել է չար անհավատներից մեկի մասին, ով արգելել է Մարգարե Մուհամմեդին (Խ.Ա.Ո.Ն) աղոթել Քաբբայում.

**«Ոչ, եթե նա դադար չտա, Մենք կբռնենք նրան նասիյահից (գլխի առջևի հատվածից) ստախոս ,մեղսալի նասիյահից (գլխի առջևի հատվածից)» (Ղուրան 96:15-16)**

Ինչու՞ է Ղուրանը նկարագրում գլխի առջևի հատվածը որպես ստախոս և մեղսալի: Ինչու՞ Ղուրանը չի ասում , որ անհատն է հանդիսանում ստախոս և մեղսալի: Ո՞րն է գլխի առջևի հատվածի, ստի և մեղսալի լինելու միջև կապը:

Եթե մենք դիտենք գլխի առջևի հատվածի գանգը, մենք կարող ենք գտնել ուղեղի առաջնային հատվածը (տես պատկեր 12) Ի՞նչ է ասում հոգեբանությունը այս հատվածի ֆունկցիայի մասին: Անատոմիայի Անհրաժեշտությունները և Հոգեբանություն աշխատությունը տվյալ հատվածի մասին ասում է.

*«Ծրագրավորել դրդումը և հեռատեսությունը և նախաձեռնել շարժումները, որոնք տեղի են ունենում ճակատային բլթակների*

*առաջնային հատվածում, նախա-առաջնային շրջանում: Սա հանդիսանում է համակցող կեղևի հատվածը...»:*[20]

Գիրքը նույնպես ասում է. *«Մասնակցության շարժառիթների առնչությամբ առաջնային հատվածը, նույնպես, կարծեցյալ հանդիսանում է ագրեսիայի ֆունկցիոնալ կենտրոնը...»:*[21]

Այսպիսով, ուղեղի այս հատվածը պատասխանատու է ծրագրավորման, դրդման, բարիքի նախաձեռնության և մեղսալի վարքի համար, այն նաև պատասխանատու է ստի և ճշմարտության համար: Ուստի, պատշաճ է նկարագրել գլխի առջևի մասը որպես ստի և մեղքի կենտրոն, երբ որևէ մեկը ստում կամ մեղք է գործում, ինչպես ասում է Ղուրանը. *«...Ստախոս, մեղսալից նասիյահ (գլխի առջևի հատված)»:*




Պատկեր 12 Ուղեղի կեղևի ձախ կիսագնդի ֆունկցիոնալ հատվածներ: Առաջնային հատվածները տեղակայված են ուղեղային կեղևի առաջին հատվածում: (Անատոմիայի Անհրաժեշտությունները և Հոգեբանությունը, Սիլեյ և այլոք էջ.210)

Ըստ պրոֆեսոր Մուրի, նախա -առաջնային հատվածի այս ֆունկցիաները գիտնականները հայտնաբերել են վերջին վաթսուն տարիների ընթացքում:[22]

## Ե. Ղուրանը ծովերի և գետերի մասին

---

[20] Անատոմիայի Անհրաժեշտությունները և Հոգեբանությունը Սիլեյ և այլոք էջ.211
Նույնպես տես Մարդկային Նյարդային Համակարգը, Նոբեք և այլոք էջ.410-411

[21] Անատոմիայի Անհրաժետությունները և Հոգեբանություն, Սիլեյ և այլոք էջ.211

[22] Ալ-Իջազ ալ-Ալմի ֆի ալ-Նասեյահ (Գլխի առաջին հատվածի գիտական հրաշքները) Մուր և այլոք էջ.41

Ժամանակակից Գիտությունը հայտնաբերել է, որ այն հատվածներում, որտեղ հանդիպել են ծովերը, առկա է պատնեշ: Այս պատնեշը բաժանում է երկու ծովերը, այնպես, որ յուրաքանչյուր ծովն ունի իր իսկ ջերմաստիճանը, աղիությունը և խտությունը:[23] Օրինակ Միջերկրական ծովի ջուրը տաք է, աղի և նվազ խիտ, ի համեմատություն Ատլանտյան օվկիանոսի ջրերի: Երբ Միջերկրական ծովի ջրերը Ջիբրալթարի նեղուցով մտնում են Ատլանտյան օվկիանոս,շարժվում են մի քանի հարյուր կիլոմետր դեպի Ատլանտյան օվկիանոս մոտ 1000 մետր խորությամբ իրենց տաք, աղի և նվազ խիտ բնութագրությամբ: Միջերկրական ջուրը կայունանում է այս խորությամբ:[24] (տես պատկեր 13)




Պատկեր 13 Միջերկրական ծովի ջրերը Ջիբլարթար նեղուցով Ատլանտյան օվկիանոս են մտնում իրենց իսկ ջերմությամբ, աղիությամբ և նվազ բնութագրությամբ, ի շնորհիվ նրանց միջև գտնվող պատնեշի: Աստիճանները հաշվարկում են ըստ Ցելսիուսի:(Ծովային Երկրաբանություն, Քուենին էջ.43 մի փոքր լրացումներով)

Չնայած գոյություն ունեն մեծ ալիքներ, ուժեղ հոսանքներ և այդ ծովերի մակընթացություններ, նրանք չեն խառնվում կամ անցնում պատնեշը:

Սուրբ Ղուրանը նշում է, որ հանդիպող երկու ծովերի միջև, գոյություն ունի պատնեշ և նրանք չեն խառնվում: Աստված ասում է.

**«Նա ազատ է արձակել միասին հանդիպող երկու ծովերը: Նրանց միջև գոյություն ունի պատնեշ: Նրանք չեն խառնվում:» (Ղուրան 55:19-20)**

Սակայն երբ Ղուրանը խոսում է թարմ և աղի ջրերի բաժանման մասին, պատնեշի հետ միասին նշում է «արգելող միջնորդը»: Ղուրանի մեջ Աստված ասում է.

**«Նա մեկն է, ով ազատ է արձակել երկու տեսակի ջրերը, մեկը քաղցր և համեղ և մյուսը աղի և դառը: Եվ, Նա նրանց միջև արարել է պատնեշ և արգելող միջնորդ»: (Ղուրան 25:33)**

---

[23] Օվկիանոսագիտության Սկզբունքները, Դեյվիս էջ.92-93
[24] Օվկիանոսագիտության Սկզբունքները Դեյվիս էջ.93

Հարց է ծագում, թե ինչու՞ է Ղուրանը նշում միջնորմը, երբ խոսում է թարմ և աղի ջրերի բաժանման մասին, սակայն չի նշում, երբ խոսում է երկու ծովերի բաժանման մասին:

Ժամանակակից գիտությունը հայտնաբերել է, որ գետաբերաններում, որտեղ հանդիպում են մաքուր և աղի ջրերը, իրավիճակը մի փոքր տարբերվում է երկու ծովերի հանդիպման գետաբերաններից: Հայտնագործել են, որ այն, ինչ տարբերակում է թարմ ջուրը աղի ջրից, գետաբերաններում հանդիսանում է *«խորացող գոտին, նշված խտությամբ, որը արագորեն բաժանում է երկու շերտերը»:*[25] Այս միջնորմը, բաժանման գոտին, ունի տարբերվող աղիություն և թարմ, և աղի ջրերից[26]:(տես պատկեր 14)




Պատկեր 14 Երկայնական բաժինը, որը ցույց է տալիս աղիության աստիճանը (բաժինները յուրաքանչյուր հազար %) գետնաբերանում: Այստեղ մենք կարող ենք տեսնել թարմ և աղի ջրերի միջև միջնորմը, բաժանման հատվածը: (Օվկիանոսագիտության Ներածական, Թուրման էջ.301 մի փոքր լրացումներով)

Այս տեղեկությունը հայտնաբերել են վերջերս, կիրառելով ջերմաստիճանի, աղիության, խտության և թթվածնային լուծողականությունը և այլնի չափման ժամանակակից սարքավորումները: Մարդկային տեսողությունը չի կարող տեսնել հանդիպող երկու գետերի տարբերությունը, քանի որ երկու ծովերն էլ մեզ միատարր են թվում: Նմանապես, մարդկային տեսողությունը չի կարող տեսնել գետնաբերանի ջրի բաժանման երեք տեսակները, թարմ, աղի և միջնորմը, բաժանող հատվածը:

## Ջ. Ղուրանը խորը ծովերի և ներքին ալիքների մասին

Ղուրանի մեջ Աստված ասում է.

**«Կամ անհավատների վիճակը նման է խորը ծովի խավարի: Այն ծածկված է ալիքներով, որոնց վրա առկա են ալիքներ, որոնց վրա էլ առկա են ամպերը: Խավար մեկը մյուսից**

[25] Օվկիանոսագիտություն , Գրոսս էջ.242 Նույնպես տես Օվկիանոսագիտություն Ներածական Թրուման էջ.300-301
[26] Օվկիանոսագիտություն , Գրոսս էջ.244 և Օվկիանոսի Ներածական Թրուման էջ.300-301

**վեր: Եթե անհատը ձգի իր ձեռքը, նա չի կարող տեսնել այն ...» (Ղուրան 24:40)**

Այս տարբերակը նշում է խոր ծովերի և օվկիանոսների առկա խավարը, որտեղ, եթե անհատը ձգի իր ձեռքը, չի կարող տեսնել այն: Խորը ծովերի և օվկիանոսների խավարը կարելի է գտնել մոտ 200 մետր խորության վրա: Այս խորության վրա, համարյա գոյություն չունի լույսը (տես պատկեր 15): Իսկ 1000 մետրից ցածր, բոլորովին առկա չէ լույսը:[27]

Մարդ արարածը ի վիճակի չէ սուզվել ավելի քան քառասուն մետր առանց սուզանավի կամ որոշակի սարքավորումների օգնության: Նա չի կարող գոյատևել առանց որևէ օգնության օվկիանոսների խորը խավար հատվածներում, ինչպիսիք են 200 մետր խորությունը:

Գիտնականները վերջերս են հայտնաբերել այս խավարը հատուկ սարքավորումների և սուզանավերի միջոցով, որոնք հնարավորություն են տվել նրանց սուզվել օվկիանոսների խորքերը:




Այստեղ պատկեր 15 Արևի լույսի 3 և 30 տոկոսը արտացոլվում է ծովի մակերեսին: Այնուհետ, լուսային համարյա բոլոր յոթ գույները մեկը մյուսի ետևից ներծծվում են առաջին 200 մետրի վրա, բացառությամբ կապույտ լույսի: (Օվկիանոսներ Էլդեր և Փերնեթթա էջ.27)

Նույնպես, նախկին տարբերակի նախադասություններից, **«... ծովի խորքում, այն պատված է ալիքներով, որոնց վրա առկա են ալիքների, որոնց վրա առկա են ամպեր....»**, մենք կարող ենք հասկանալ, որ ծովերի և օվկիանոսների խորը ջրերը պատված են ալիքներով, և նրանցից վեր առկա են այլ ալիքներ: Պարզ է, որ ալիքների երկրորդ խումբը հանդիսանում են մակերեսային ալիքները, որոնք մենք տեսնում ենք, որովհետև տարբերակը նշում է, որ երկրորդ ալիքներից վեր առկա են ամպերը: Սակայն, ի՞նչ կասեք առաջին ալիքների մասին:Վերջերս գիտնականները հայտաբերել են, որ գոյություն ունեն

[27] Օվկիանոսներ, Էլդեր և Փերնեթթա էջ.27

ներքին ալիքներ, որոնք *«առաջանում են տարբեր խտությունների երկու շերտերի միացությունից»:*[28] (տես պատկեր 16)




Պատկեր 16 Ներքին ալիքները ջրի տարբեր խտության երկու շերտերի մակերեսին: Մեկը խիտ է, ստորին ալիքը, մյուսը նվազ խիտ, որը հանդիսանում է վերին ալիքը: (Օվկիանոսագիտություն Գրոսս էջ.204)

Ներքին ալիքները ծածկում են ծովերի և օվկիանոսների խորը ջրերը, որովհետև նրանք ունեն ավելի բարձր խտություն, քան նրանց վերին հատվածում գտնվողները: Ներքին ալիքները գործում են ինչպես մակերեսային ալիքները: Նրանք կարող են կոտրվել, ինչպես մակերեսային ալիքները: Մարդկային տեսողությունը չի կարող տեսնել ներքին ալիքները, սակայն կարող է հայտնաբերել ուսումնասիրելով տվյալ տեղանքի ջերմաստիճանը կամ աղային փոփոխությունները:[29]

## Է. Ղուրանը ամպերի մասին

Գիտնականները ուսումնասիրել են ամպերի տիպերը և գիտակցել են, որ անձրևի ամպերը ձևավորվել և կազմավորվել են ըստ որոշակի համակարգերի և որոշակի քայլերի, որոնք կապված են քամու և ամպերի որոշակի տեսակների հետ:

Մեկ տեսակի անձրևի ամպը հանդիսանում է կարկտաբեր ամպ: Օդերևութաբանները ուսումնասիրել են, թե ինչպես են ձևավորվում կարկտաբեր ամպերը և ինչպես են նրանք առաջացնում անձրև, կարկուտ և կայծակ:

Նրանք գտել են, որ անձրևից առաջ կարկտաբեր ամպերը անցնում են հետևյալ փուլերը.

1. **Քամին հրում է ամպերը.** Կարկտաբեր ամպերը սկսում են ձևավորվել, երբ քամին հրում է ամպերի մի քանի փոքր կտորներ,(ամպերի

---

[28] Օվկիանոսագիտու թյուն, Գրոսս էջ.205
[29] Օվկիանոսագիտություն , Գրոսս էջ.205

քուլաներ) մի տարածք, որտեղ այդ ամպերը զուգադիմում են: (տես պատկերներ 17 և 18)



Պատկեր 17. Արբանյակային նկար, որը ցույց է տալիս ամպերը, որոնք շարժվում են միացման B,C, D տարածքներ: Սլաքները նշում են քամու ուղղությունը: (Արբանյակային Նկարների կիրառությունը Եղանակային Վերլուծության և Կանխատեսման համար, Անդերսոն և այլոք էջ.188)



Պատկեր 18. Ամպերի փոքր քուլաներ (կարկտաբեր ամպեր), որոնք շարժվում են հորիզոնի միացման տարածքը, որտեղ մենք կարող ենք տեսնել մեծ կարկտաբեր ամպեր:( Ամպերը և փոթորիկները, Լուդլամ 7.4)

2. **Միացում.** Այնուհետ, փոքր ամպերը միանում են միմյանց կազմելով մեծ ամպ[30]: (Տես պատկեր 18 և 19)

---

[30]Տես Մթնոլորտ Անթիս և այլոք, էջ.268-269 և Օդերևութաբանության Տարրերը Միլլեր և Թոմսոն էջ.141




կտորներ, (կարկուտի ամպեր): Բ. Երբ փոքր ամպերը միանում են միմյանց ,աճում է հոսանքի մղումը ավելի մեծ ամպերի, այսպիսով ամպը բարձրանում է վեր: Ջրի կաթիլները նշվում են * նշանով: (Մթնոլորտ, Անթես և այլոք, էջ.269)

3.**Վեր Հառնել.** Երբ փոքր ամպերը միանում են, ապա մեծ ամպերի հոսանքի մղումը սառչում է: Մղումը ամպերի կենտրոնական հատվածում ավելի հզոր է, քան եզրերինը:[31] Այս մղումները պատճառ են հանդիսանում ամպի մարմինների հորիզոնական աճին , այնպես որ ամպը վեր է հառնում (տես պատկեր 19 B, 20 և 21) Այս հորիզոնական աճը հանդիսանում ամպի մարմինների վեր հառման պատճառ ,դեպի մթնոլորտի ավելի սառը շրջաններ, որտեղ ձևավորվում են ջրի կաթիլները և կարկուտը և սկսում են ավելի լայնորեն աճել: Երբ ջրի այս կաթիլները և կարկուտը դառնում են ավելի ծանր, քան մղումը ի վիճակի է օժանդակել, նրանք սկսում են ընկնել ամպերից ինչպես անձրև , կարկուտ և այլն:[32]




[31] Մղումը կենտրոնական հատվածում ավելի ուժեղ է, որովհետև նրանք պաշտպանված են սառեցնող հետևանքներով ամպերի արտաքին բաժինների շնորհիվ:
[32] Տես Մթնոլորտը Անթես և այլոք, էջ.269 և Օդերևութաբանության Տարրերը Միլլեր և Թոմսոն էջ.141-142

Պատկեր 20 Կարկտաբեր ամպ: Ամպի վեր հառնումից հետո, անձրևում է: (Եղանակը և Կլիման Բոդին էջ.123)

Ղուրանի մեջ Աստված ասում է.

**«Արդյո՞ք դուք չեք տեսել, թե ինչպես է Աստված մեղմորեն շարժում ամպերը, այնուհետ միացնում դրանք, այնուհետ վեր հառնում և այնուհետ դուք տեսնում եք անձրև այնտեղից...» (Ղուրան 24:43)**

Օդերևութաբանները միայն վերջերս են տեղեկացել այն մանրամասներին, որոնք կապված են ամպի ձևավորման, կառուցվածքի, ֆունկցիաների հետ կիրառելով այնպիսի ժամանակակից սարքավորումներ, ինչպիսիք են արբանյակները, ափսեները, համակարգիչները, օդապարիկները և այլ սարքավորումներ, որպեսզի ուսումնասիրեն քամին և նրա ուղղությունը, չափեն խոնավությունը և տատանումները և որոշեն մակարդակները և մթնոլորտի ճնշման տարբերակները:[33]

Նշելով ամպերը և անձրևը, նախորդ տարբերակը խոսում է կայծակի և կարկուտի մասին.

**«Եվ Նա ուղարկեց ներքև կարկուտ լեռներից, երկնքի ամպերից և Նա հարվածեց դրանով ում համար Նա ցանկություն ունեցավ և շրջեց նրանից, ում համար Նա ցանկություն ունեցավ: Կայծակի վառ բռնկումը համարյա կուրացնում է տեսողությունը»: (Ղուրան 24:43)**



Պատկեր 21 (Կարկտաբեր ամպ ) ԱմպերիԳունավոր Ուղեցույց Աքորեր և Ուեքսել էջ.23

Օդերևութաբանները գտել են, որ այս կարկտաբեր ամպերը, որոնք առաջացնում են կարկուտը, հասնում են 25,000 մինչ 30,000 ոտնաչափ բարձրություն, (4.7 մինչ 5.7 մղոն)[34] ինչպես լեռները, ինչպես ասել է Ղուրանը. **«... Եվ, Նա ուղարկեց կարկուտ լեռներից, երկնքի ամպերից...» (Ղուրան 24:43)**

---

[33] Տես Իջազ ալ-Ղուրան Ալ Քարիմ Ֆիի Ուասֆ Անուաա ալ-Ռիյահ, ալ-Սոհոբ, ալ Մաթար, Մաքքի և այլոք էջ.55

[34] Օդերևութաբանության Տարրերը, Միլլեր և Թոմփսոն էջ.141

Այս տարբերակը բարձրացնում է մի հարց: Ինչու՞ է տարբերակը ասում «կայծակում է» հղումը ուղղելով այն կարկուտին: Արդյո՞ք սա նշանակում է, որ կարկուտը հանդիսանում է կայծակի առաջացման մեծ գործոն:Եկեք տեսնենք, թե «Օդերևութաբանությունը Այսօր» գիրքը ինչ է ասում այդ մասին:

*Այն ասում է, որ ամպը դառնում է էլեկտրականացված,երբ կարկուտը իջնում է սառեցված կաթիլներով և սառցե բյուրեղներով: Երբ հեղուկ կաթիլները բախվում են կարկտահատիկի հետ, նրանք սառչում են կապից և արձակում են թաքնված ջերմություն:Սա պահում է կարկտահատիկների մակերեսը ավելի տաք, քան շրջապատող բյուրեղներն են: Երբ կարկտահատիկը կապի մեջ է մտնում սառցե բյուրեղի հետ, տեղի է ունենում կարևոր ֆենոմեն. Էլեկտրոնները սահում են սառը օբյեկտից դեպի տաքը: Ուստի, կարկտահատիկը բացասական լիցք է ստանում: Միևնույնը տեղի է ունենում, երբ չափից դուրս կաթիլները կապի մեջ են մտնում կարկուտի հատիկի հետ և դրականորեն լիցքավորված փոքրիկ բեկորները կոտրվում են: Այս թեթև դրականորեն լիցքավորված հատիկները հոսման միջոցով անցնում են ամպի վերին հատվածը: Կարկուտը, որը մնացել է բացասական լիցքավորությամբ, ընկնում է ամպի հատակը, այսպիսով ամպի ստորին հատվածը դառնում է բացասականորեն լիցքավորված: Այս բացասական լիցքավորումները այնուհետ լիցքավորվում են որպես կայծակ:*[35] *Այստեղից, մենք եզրահանգում ենք, որ կարկուտը հանդիսանում է կայծակի ամենամեծ գործոնը:*

Կայծակի այս տեղեկությունը հայտաբերել են միայն վերջերս: Մինչ 1600 ՄԹԱ գերակշիռ հանդիսանում էր Արիստոտելի օդերևութաբանական գաղափարները: Օրինակ, նա ասում է, որ մթնոլորտը պարունակում է երկուս տեսակի գոլորշիացում, խոնավ և չոր: Նա նույնպես ասում է, որ ամպրոպը հանդիսանում է չոր բախում հարևան ամպերի հետ, իսկ կայծակը չոր մառախուղի բորբոքում և այրում է բարակ և թույլ կրակի:[36] Սրանք հանդիսանում են օդերևութաբանության մի քանի գաղափարները, որոնք գերակշռել են Ղուրանի հայտնության ժամանակաընթացքում, տասնչորս դար առաջ:

## Ը. Գիտնականների մեկնաբանությունները սուրբ ղուրանի գիտական հրաշքների մասին

Այս մեկնաբանությունները հանդիսանում են միայն մի քանիսը, որոնք արտահայտել են գիտնականները Սուրբ Ղուրանի հրաշքների մասին: Ամբողջ հղումը կարելի է գտնել «Սա է Ճշմարտությունը» տեսանյութի մեջ: Այստեղ դուք կարող եք տեսնել և ունկնդրել

---

[35] Օդերևութաբանությունն Այսօր, Աhրենս Էջ.437

[36] Արիստոտելի Աշխատանքները, որոնք թարգմանվել են անգլերեն. Օդերևութաբանություն , հատոր 3 Ռոսս և Այլոք Էջ.369 a-369b

մեկնաբանություններ տվող գիտնականներին: (Խնդրում ենք այցելեք www.islam-guide.com/truth, պատճենելու, առցանց դիտելու համար):

1. **Դոկտոր Թ.Վ.Ն Փերսուադը** հանդիսանում է Անատոմիայի Կանադայի, Մանիթոբայի Համալսարանի Մանկաբուժության և Մանկան Առողջության, Մանկաբարձության, Գինեկոլոգիայի և Վերարտադրողականության Գիտությունների Պրոֆեսոր, Ուիննիփեգ, Մանիթոբա, Կանադա: Նաև նա 16 տարի շարունակ ղեկավարում էր Անատոմիայի Բաժանմունքը: Նա հայտնի է իր բնագավառում: Նա հեղինակ է 22 ձեռնարկի և հրատարակել է ավելի քան 181 գիտական աշխատություն:1991 թվականին նա ստացավ ամենաակնառու պարգևը, որը հանձնում է Ջ.Ս Բ Մեծ Պարգևը Անատոմիական Կանադական ասոցիացիան, Կանադայի անատոմիայի բնագավառում: Երբ նրան հարցրեցին Ղուրանի գիտական հրաշքների մասին, որը նա ուսումնասիրել էր, նա հայտնեց հետևյալը.

*«Այն ինձ բացատրեց, որ Մուհամմեդը շատ յուրօրինակ մարդ էր: Նա չէր կարող կարդալ, ոչ էլ գրել: Փաստացի նա անուսում էր: Եվ մենք խոսում ենք տասներկու, փաստացի տասնչորս հարյուր տարի առաջ տեղի ունեցող դեպքերի մասին: Դուք ունեք մի անուսում մեկը, ով տալիս է խորիմաստ ազդարարություններ և հայտարարություններ, որոնք գիտական բնույթով զարմանալիորեն ճշգրիտ են: Եվ ես անձամբ չեմ կարող տեսնել, թե այն կարող է պատահական լինել:Այնտեղ առկա են բազմաթիվ ճշգրտություններ և ինչպես Դոկտոր Մուրը, ես չեմ դժվարանում արտահայտել, որ այն աստվածային ոգեշնչություն կամ հայտնություն է, որը ուղղորդել է նրան այս հայտարարություններին»:*

Իր որոշ գրքերի մեջ Պրոֆեսոր Փերսուադը ներառում է Ղուրանական տարբերակները և Մարգարե Մուհամմեդի (Խ.Ա.Ո.Ն) խոսքերը:Որոշ կոնֆերանսների ընթացքում նա նույնպես ներկայացրել է այս տարբերակները և Մարգարե Մուհամմեդի (Խ.Ա.Ո.Ն) խոսքերը:

2. **Դոկտոր Ջո Լեյ Սիմփսոնը** հանդիսանում է Մանկաբարձության և Գինեկոլոգիայի բաժանմունքի ղեկավարը, Բեյլորի Բժշկական Քոլեջի Գինեկոլոգիայի պրոֆեսորը, Հյուսթոն, Տեխաս, ԱՄՆ Մոլեկուլային և Մարդկային Գենետիկայի Պրոֆեսոր: Նախկինում նա հանդիսանում էր Թենեսսի Համալսարանի Մանկաբարձության և Գինեկոլոգիայի Պրոֆեսորը և ղեկավարը, Մեմֆիս, Թեննեսի ԱՄՆ: Նա նաև հանդիսանում էր Ամերիկյան Պտղաբերության Կազմակերպության նախագահը: Նա բազմաթիվ պարգևներ է ստացել, ներառելով 1992 թվականի Մանկաբարձության և Գինեկոլոգիայի Պրոֆեսորների ընկերության Հասարակական Ճանաչման Պարգևը: Պրոֆեսոր Սիմփսոնը ուսումնասիրել է Մարգարե Մուհամմեդի (Խ.Ա.Ո.Ն) հետևյալ խոսքերը.

**«Ձեզանից յուրաքանչյուրի մեջ, արարման բոլոր տարրերը միասին հավաքվել են ծեր մոր արգանդի մեջ քառասուն օրվա ընթացքում…»:**[37]

**«Երբ անցնում է սաղմի քառասուն երկու գիշերները, Աստված հրեշտակ է ուղարկում, ով ձևավորում և արարում է դրա լսողությունը, տեսողությունը, մաշկը, մարմինը և ոսկորները…»:**[38]

Նա լայնորեն ուսումնասիրեց Մարգարե Մուհամմեդի (Խ.Ա.Ո.Ն) այս արտահայտությունները, նշելով, որ առաջին քառասուն օրը կազմում է սաղմի ծագման ակնհայտորեն տարբերակիչ փուլը: Մասնավորապես նա տպավորված էր Մարգարե Մուհամմեդի (Խ.Ա.Ո.Ն) խոսքերի կատարյալ ճշգրտությամբ և ստույգությամբ: Այնուհետ կոնֆերանսներից մեկի ընթացքում նա տվեց հետևյալ կարծիքը.

*«Այսպիսով, Մարգարե Մուհամմեդի (Խ.Ա.Ո.Ն) նշված երկու պատումները մեզ տրամադրում են հիմնական սաղմաբանական զարգացման որոշակի աղյուսակ, մինչ քառասուն օրը: Այս առավոտ դա կրկին կատարել են այլ բանախոսները. Նմանատիպ պատումները չէին կարող ծեռք բերվել հիմնվելով գիտական գիտելիքների վրա, որոնք հասանելի էին այդ ժամանակաընթացքում…. Ուստի, ես կարծում եմ, գենետիկայի և կրոնի միջև առկա չէ որևէ հակամարտություն, այլ, փաստացի, կրոնը կարող է ուղղորդել գիտությունը որոշ ավանդական գիտական մոտեցումներին ավելացնելով Ղուրանական հայտնություններ, որոնք վավեր են դարձել դարեր անց, որոնք էլ աջակցում են Աստծո տված Ղուրանի կարծիքներին»:*

3. **Դոկտոր Ի. Մարշալ Ջոնսոնը** հանդիսանում է Թոմաս Ջեֆերսոնի Համալսարանի Անատոմիայի և Կենսաբանության Զարգացման Պատվելի պրոֆեսորը, Ֆիլադելֆիա, Փենսիլվանիա ԱՄՆ: Այնտեղ 22 տարի նաև հանդիսանում էր Անատոմիայի պորֆեսորը, Անատոմիայի Բաժանմունքի և Դանիել Բախի հաստատության ղեկավարը: Նաև նա Թերաթոլոգիայի կազմակերպության նախագահն էր: Նա հեղինակել է ավելի քան 200 հրատարակություն:1981 թվականին Սաուդյան Արաբիայի Դամմամի, Յոթերրորդ Բժշկական Կոնֆերանսի ընթացքում, ներկայացնելով իր հետազոտությունը պրոֆեսոր Ջոնսոնը ասաց.

*«Ամփոփում. Ղուրանը նկարագրում է ոչ միայն արտաքին ձևի զարգացումը, այլ նաև նշում է սաղմի ներքին փուլերը, արարումը և զարգացումը, նշելով հիմնական իրադարձությունները, որոնք ճանաչել է ժամանակակից գիտությունը»:*

---

[37] Հաղորդել է Սահիիհ Մուսլիմ 2643 և Սահիհ Ալ-Բուխարի 3208: Նշում. Ինչ է այս երկու չակերտների առանձնահատկությունը, որը ներկայացնում է Մարգարե Մուհամմեդի Խ.Ա.Ո.Ն խոսքերը: Թվերը կիրառում են նշելու պատման համարը: Պատում նշանակում է Մարգարե Մուհամմեդի Խ.Ա.Ո.Ն խոսքերը նրա վստահելի ուղեկցորդներից:

[38] Հաղորդել է Սահիհ Մուսլիմ 2645

Նա նույնպես ասաց. *«Որպես գիտնական, ես միայն կարող եմ գործ ունենալ այն բաների հետ, որոնք ես կարող եմ մասնավորապես տեսնել: Ես կարող եմ հասկանալ սաղմաբանությունը և կենսաբանության զարգացումը: Ես կարող եմ հասկանալ խոսքերը, որոնք թարգմանվել է Ղուրանից: Քանի որ ես նախկինում նշել եմ օրինակները, եթե ես տեղափոխվեի այդ դարաշրջան, տեղյակ լինելով այնին, ինչ ես գիտեմ այսօր և նկարագրել, ես չէի կարող նկարագրել ամենը, ինչ նկարագրվել է: Ես չեմ տեսնում փաստի որևէ վկայություն, հերքելու գաղափարը, որը այս անհատը, Մուհամմեդը այս տեղեկությունը պետք է զարգացներ ինչ որ տեղից: Այսպիսով, ես ոչ մի հակամարտություն չեմ տեսնում այն գաղափարի հետ, որ աստվածային միջամտությունը ներգրավված է այն բանի մեջ, ինչ նա գրառել է»*[39]

4. **Դոկտոր Ուիլյամ Ու. Հեյը** հայտնի ծովային գիտնական է: Նա հանդիսանում է Կոլորադոյի Համալսարանի Երկրաբանական Գիտությունների պրոֆեսոր, Կոլորադո ԱՄՆ: Նախկինում նա ղեկավարում էր Մայամիի Համալսարանի Ծովային դպրոցը և Մթնոլորտային Գիտությունը ,Մայամի, Ֆլորիդա, ԱՄՆ: Պրոֆեսոր Հայի հետ տեղի ունեցած քննարկումից հետո, որը վերաբերվում էր վերջերս հայտնաբերված ծովային փաստերի Ղուրանի նշումներին, նա ասաց.

*«Ինձ շատ հետաքրքրեց այն, որ նմանատիպ տեղեկությունը գտնվում է հնագույն գրի, Սուրբ Ղուրանի մեջ և ես տեղյակ չեմ, թե որտեղից են դրանք եկել, սակայն, ես կարծում եմ , որ չափազանց հետաքրքիր է, որ դրանք առկա են այնտեղ և որ այս աշխատանքը շարունակվում է հայտնագործել, որոշ հատվածների իմաստը»:* Եվ երբ նրան հարցրեցին Ղուրանի աղբյուրի մասին, նա պատասխանեց.

*«Այո, ես կարող եմ կարծել, որ այն պետք է աստվածային լինի»:*

5. **Դոկտոր Ջերալդ Ս. Գորինգերը** հանդիսանում է Ջորջթաունի Համալսարանի, Վաշինգտոն, ԱՄՆ, Բժշկական Սաղմաբանության Բջջային Կենսաբանության Բաժանմունքի, Բժշկության Դպրոցի Դասընթացի տնօրենը և թղթակից պրոֆեսորը: Սաուդյան Արաբիայի Ռիյադ քաղաքում տեղի ունեցած Ութերրորդ Բժշկական Կոնֆերանսի ընթացքում, ներկայացնելով իր հետազոտությունը,Պրոֆեսոր Գորինգերը հայտնեց հետևյալը.

*«Համեմատաբար քիչ այաթների, Ղուրանական տարբերակների մեջ առկա է մարդկային զարգացման բավական ընդգրկուն նկարագրություն սկսած սերմերի խառնվելու ժամանակաշրջանից, մինչ օրգանների ձևավորումը: Նախկինում գոյություն չի ունեցել մարդկային զարգացման որևէ նմանատիպ որոշակի և կատարյալ գրառում, ինչպիսիք են դասակարգումը, տերմինաբանությունը և նկարագրությունը, որոնք գոյություն են ունեցել մինչ այդ: Մեծամասամբ, եթե ոչ ամբողջովին, այս*

[39] Մարգարե Մուհամմեդը անուսում էր: Նա չէր կարող ոչ գրել, ոչ էլ կարդալ, սակայն նա թելադրեց Ղուրանի իր ուղեկցորդներին և պատվիրեց նրանցից մի քանիսին գրառել այն:

*նկարագրությունը նախագուշակված էր դարեր առաջ գրառումներով, որոնք վերաբերվում են մարդկային սաղմի պտղի զարգացման տարբեր փուլերին,որոնք արձանագրվել են ավանդական գիտական գրականության մեջ»:*

6. **Դոկտոր Յոշիհիիդե Քոզային** հանդիսանում է Տոկիոյի համալսարանի պատվավոր պրոֆեսոր, (Յոնգո, Տոկիո, Ճապոնիա) և Ազգային Աստղաբանության Յետազատությունների ղեկավարը, (Միթակա, Տոկիա, Ճապոնիա): Նա ասաց.

*«Ես շատ տպավորված էի Ղուրանի մեջ գտնելով ճշմարիտ աստղագիտական փաստեր, որը մեզ ժամանակակից աստղաբանների համար ուսումնասիրել է տիեզերքի փոքր մասնիկները:Մենք մեր ջանքերը կենտրոնացրել ենք, որպեսզի ընկալենք փոքր մասերը:Որովհետև կիրառելով աստղադիտակները, մենք կարող ենք միայն տեսնել երկնքի շատ քիչ մասերը, առանց մտածելու ամբողջ տիեզերքի մասին: Այսպիսով, ընթերցելով Ղուրանը և պատասխանելով հարցերին, ես կարծում եմ, որ ես կարող եմ գտնել տիեզերքի հետազոտության իմ ապագա ուղղին»:*

7. **Պրոֆեսոր Թիջաթաթա Թիջասենը** հանդիսանում է Չիանգ Մաի Յամալսարանի Անատոմիայի Բաժանմունքի ղեկավարը (Չիանգ Մաի, Թաիլանդ):Մինչ այդ նա ղեկավարում էր միևնույն համալսարանի Բժշկական Ֆակուլտետը: Սաուդյան Արաբիայի, Ռիյադ քաղաքում տեղի ունեցած Բժշկական Կոնֆերանսի ընթացքում, պրոֆեսոր Թիջասենը ոտքի կանգնեց և ասաց.

*«Վերջին երեք տարիների ընթացքում,ես սկսել եմ հետաքրքրվել Ղուրանով....:Ելնելով իմ ուսումնասիրություններից և այս կոնֆերանսի գիտելիքներից, ես հավատք եմ ընծայում, որ այն ամենը ինչ գրառվել է Ղուրանի մեջ տասնչորս դար առաջ, պետք է ճշմարտություն լինի, որը կարելի է գիտականորեն ապացուցել: Քանի որ Մարգարե Մուհամմեդը չէր կարող կարդալ և գրել, նա պետք է որ մարգարե լիներ, ով վստահեց այս ճշմարտությանը, որը հայտնվեց նրան, ինչպես լուսավորում մեկից, ով իրավասու է որպես արարիչ: Այս արարիչը պետք է որ Աստված լինի: Ուստի ես կարծում եմ, որ ժամանակն է ասել Լե իլահա իլլա Ալլահ, որը նշանակում է գոյություն չունի ոչ մի աստված երկրպագության համար բացառությամբ Ալլահի, (Աստծո) և Մուհամմադուր ռասուլ Ալլահ,որը նշանակում է Մուհամմեդը հանդիսանում է Ալլահի (Աստծո) Մարգարեն, (Առաքյալը): Վերջապես, ես պետք է շնորհավորեմ այս կոնֆերանսի հաջող և հոյակապ կազմակերպման համար...:Ես ձեռք եմ բերել ոչ միայն գիտական և կրոնական տեսակետ, այլև մեծ հնարավորություն հանդիպելու շատ հայտնի գիտնականներ և նոր ընկերներ, մասնակիցների մեջ: Ամենից թանկ բանը,որ ես ձեռք եմ բերել գալով այստեղ հանդիսանում է Լա իլահաիլլա Ալլահ Մուհամմադուր ռասուլ Ալլահ արտահայտությունը և Մահմեդական դառնալը»:*

Այս բոլոր օրինակներից հետո, որոնք մենք տեսանք Սուրբ Ղուրանի գիտական հրաշքների մասին և այս բոլոր գիտնականների մեկնաբանություններից, եկեք հարցնենք մեզ.

- Արդյո՞ք կարող է զուգադիպել այն, որ Ղուրանի մեջ նշված տարբեր բնագավառներին վերաբերող գիտական տեղեկությունները, որոնք միայն վերջերս են հայտնաբերվել , հայտնվել է տասնչորս դար առաջ:
- Արդյո՞ք Ղուրանը հեղինակել է Մուհամմեդը (Խ.Ա.Ո.Ն) կամ մեկ այլ մեկը:

Միակ հնարավոր պատասխանը այն է, որ այս Ղուրանը պետք է որ լինի Աստծո գրավոր խոսքը, որը Նա հայտնել է:

(Լրացուցիչ տեղեկությունների, առցանց հոդվածների, գրքերի և Սուրբ Ղուրանի գիտական հրաշքների տեսագրությունների համար խնդրում ենք այցելել www.islam-guide.com/science կամ կապվեք վերոհիշյալ կազմակերպությունների հետ: )

# (2) Մեծ մարտահրավեր ներկայացնելու սուրբ ղուրանի գլուխներին համապատասխան մեկ գլուխ

Ղուրանի մեջ Աստված ասել է.

**«Եվ, եթե դուք կասկածում եք այն, ինչ Մենք հայտնել ենք (Ղուրանը) նրան, ով երկրպագում է Մեզ (Մուհամմեդին), ապա ներկայացրեք նմանատիպ մեկ գլուխ և կոչեք ձեր վկաներին (աջակիցներին և օգնականներին բացառությամբ Աստծո), եթե դուք ճշմարտացի եք: Եվ, եթե դուք այդպես չվարվեք, և դուք երբեք ի վիճակի չեք անել դա, ապա վախեցեք Կրակից (Դժոխքից), որի վառելիքը մարդիկ և քարերն են: Այն պատրաստվել է անհավատների համար: Եվ տուր ավետիս, (ով Մուհամմեդ) նրանց, ովքեր հավատք են ընծայել և բարիք են գործել, որ նրանց համար են այգիները (Դրախտը), որտեղ գետեր են հոսում...»: (Ղուրան 2:23-25)**

Ղուրանի հայտնությունից ի վեր, տասնչորս դար, ոչ ոք ի վիճակի չէր ներկայացնել, Ղուրանի գլուխների պես մեկը իրենց գեղեցկությամբ, ճարտասանությամբ, շքեղությամբ, իմաստուն օրենսդրությամբ, ճշմարիտ տեղեկությամբ, ճշմարիտ մարգարեությամբ և այլ կատարյալ ածականներով: Նույնպես նշեք, որ Ղուրանի ամենափոքր գլուխը (Գլուխ

108) բաղկացած է միայն տաս բառից, սակայն ոչ ոք երբևէ ի վիճակի չի եղել ընդունել մարտահրավեր մինչ այդ և այսօր:[40]


سُورَةُ الكَوْثَرِ
بِسْمِ اللَّهِ الرَّحْمَٰنِ الرَّحِيمِ
إِنَّا أَعْطَيْنَاكَ الْكَوْثَرَ ١ فَصَلِّ لِرَبِّكَ وَانْحَرْ ٢
إِنَّ شَانِئَكَ هُوَ الْأَبْتَرُ ٣

Սուրբ Ղուրանի ամենափոքր գլուխը (գլուխ 108) բաղկացած է միայն 10 բառից, սակայն ոչ ոք երբեք չի ընդունել մարտահրավերը ներկայացնելու Սուրբ Ղուրանի նմանատիպ մեկ գլուխ:

Որոշ անհավատ արաբներ, ովքեր հանդիսանում էին Մուհամմեդի (Խ.Ա.Ո.Ն) թշնամիները փորձեցին ընդունել մարտահրավերը, որպեսզի ապացուցեն, որ Մուհամմեդը (Խ.Ա.Ո.Ն) ճշմարիտ մարգարե չէ, սակայն նրանք ձախողեցին այդ:[41] Այս ձախողումը տեղի ունեցավ անկախ այն փաստից, որ Ղուրանը հայտնվել էր իրենց իսկ լեզվով և բարբառով և որ Մուհամմեդի ժամանակաշրջանի (Խ.Ա.Ո.Ն) արաբները շատ պերճախոս էին, ովքեր սովորություն ունեին ստեղծագործել գեղեցիկ և հոյակապ պոեզիա, որը ընթերցում և գնահատում են մինչ օրս:

# (3) Իսլամի մարգարեի մուհամմեդի (խ.ա.ո.ն) գալստյան աստվածաշնչյան մարգարեությունները

Մարգարե Մուհամմեդի (Խ.Ա.Ո.Ն) գալստյան Աստվածաշնչյան մարգարեությունները հանդիսանում են իսլամի ճշմարտությունը նրանց համար, ովքեր հավատք են ընծայում Աստվածաշնչին:

Երկրորդ Օրենք 18 տարբերակի մեջ Մովսեսն հայտնում է, որ Աստված ասաց.

**«Ես նրանց միջից կբարձրացնեմ մարգարե քեզ պես, իրենց եղբայրներից; ես կդնեմ իմ խոսքը նրա շուրթերը և նա կասի նրանց ամենը, ինչ ես կպատվիրեն նրան: Եթե որևէ մեկը չլսի իմ**

---

[40] Տես Ալ Բորհան Ֆիի Օլում Ալ Քուրան , Ալ-Զարքաշի, հատոր 2 էջ.224
[41] Տես Ալ Բորհան Ֆիի Օլում Ալ Քուրան , Ալ-Զարքաշի, հատոր 2 էջ226

**խոսքերը, որոնք ասում է մարգարեն իմ անունից, ես ինքս կկոչեմ նրան հաշվի»: (Երկրորդ օրենք 18:18-19)** [42]

Այս տարբերակներից մենք եզրակացնում ենք, որ իր մարգարեության մեջ մարգարեն պետք է ունենա հետևյալ երեք բնութագրերը.

1. Որ նա պետք է Մովսեսի պես լինի

2.Որ նա պետք է գա Իսրայելցիների եղբայրներից, այսինքն Իսմայելցիներից

3.Որ Աստված կդնի Իր խոսքերը այդ մարգարեի շուրթերը և որ նա կհայտարարի այն, ինչ պատվիրում է Աստվածը:

Եկեք ավելի խորը ուսումնասիրենք այս երեք բնութագրերը:

**1. Մարգարե ինչպես Մովսեսը.**

Հազիվ թե գտնվեն այլ երկու մարգարեներ, ովքեր այդքան նման լինեն միմյանց, ինչպես Մովսեսը և Մուհամմեդը (Խ.Ա.Ո.Ն): Երկուսն էլ ստացել են սպառիչ օրենք և կյանքի օրենսգիրք: Երկուսն էլ բախվել են իրենց թշնամիների հետ և հրաշալի կերպով հաղթանակել են: Երկուսին էլ ընդունել են որպես մարգարեներ և գործիչներ: Երկուսն էլ գաղթել են փախչելով մահապատժի դատավճռից: Մովսեսի և Հիսուսի միջև առկա համամասնությունները այդքան նման չեն, սակայն այլ կերպ կարևոր են: Սա ներառում է բնական ծնունդը, ընտանեկան կյանքը և Մովսեսի և Մուհամմեդի (Խ.Ա.Ո.Ն) մահը, այլ ոչ թե Հիսուսինը: Ավելին, Հիսուսին նրա հետևորդները համարել են Աստծո Որդի և ոչ թե բացառապես Աստծո մարգարե, ինչպես Մովսեսը և Մուհամմեդն էին (Խ.Ա.Ո.Ն) և ինչպես հավատում են Մահմեդականները նաև Հիսուսն էր: Այսպիսով այս մարգարեությունը վերաբերում է Մուհամմեդին (Խ.Ա.Ո.Ն) և ոչ թե Հիսուսին, որովհետև Մուհամմեդի (Խ.Ա.Ո.Ն) նմանությունը ավելին է. քան Հիսուսինը:

Բացի այդ Հովհաննեսի Ավետարանից կարելի է նշմարել, որ Հրեաները սպասում էին երեք որոշակի մարգարեությունների լրացմանը.

1. Հիսուսի գալստյանը

2. Եղիայի գալստյանը

3. Մարգարեի գալստյանը:

Սա ակնհայտ է այն երեք հարցերից, որոնք ուղղել են Հովհաննես Մկրտիչին.

**«Այժմ սա էր Հովհաննեսի վկայությունը, երբ Երուսաղեմի Հրեաները ուղարկել են քահանաներին և ղևտացիներին հարցնելու նրան, թե ով է նա: Նա չի ժխտել խոստովանությունը, այլ ազատ կերպով խոստովանել է. «Ես Քրիստոսը չեմ»: Նրանք հարցրեցին. «Ապա, ո՞վ ես դու: Արդյո՞ք դու Եղիան ես»: Նա ասաց. «Ոչ»: «Արդյո՞ք դու Մարգարեն ես» Նա պատասխանեց «Ոչ» »: (Հովհաննես 1:19-21)**

---

[42]Աստվածաշնչի մեջբերված այս օրինակը վերցրել ենք Նոր Միջազգային Տարբերակի Ուսումնասիրությունների Աստվածաշնչից, Նոր Միջազգային Տարբերակ:

Եթե մենք դիտենք Աստվածաշունչը խաչաձև հղումներով, մենք կարող ենք գտնել սահմանային ծանոթագրությունների Հովհաննես 1:21 տարբերակի մեջ առկա «Մարգարե» խոսքը, որը վերաբերվում է Երկրորդ Օրենքի 18:15 և 18:18[43] տարբերակների մարգարեությանը:Այստեղից մենք եզրահանգում ենք, որ Հիսուսը Քրիստոսը չի հանդիսանում այն մարգարեն, ում նշել է Երկրորդ Օրենք 18:18 տարբերակը:

**2. Իսրայելցիների եղբայրներից.**

Աբրահամը ուներ երկու որդի, Իսմայիլ և Իսահակ (Ծննդոց 21) Իսմայիլը դարձավ Արաբ ազգի նախահայրը և Իսահակը Հրեա ազգի: Մարգարեն չպետք է գար Հրեաներից, այլ նրանց եղբայրներից,այսինքն Իսմայիլցիներից: Մուհամմեդը (Խ.Ա.Ո.Ն) Իսմայիլի շառավիղը, իրոք այդ մարգարեն էր:

Նույնպես Եսայի 42:1-13 տարբերակները խոսում են Աստծո ծառայի մասին, Նրա «ընտրյալի» և «մարգարեի», ով կբերի օրենք: **«Նա չի տատանվի կամ հուսահատվի մինչ չհաստատի արդարություն երկրի վրա: Իր օրենքի մեջ բոլորը կդնեն իրենց հույսը»: (Եսայի 42:4)**

Տարբերակ 11 կապում է սպասված սուրհանդակի, Քեդարի հետևորդների հետ: Ո՞վ է Քեդարը: Ըստ Ծննդոց 25:13 տարբերակի Քեդարը հանդիսանում էր Իսմայիլի երկրորդ որդին, Մարգարե Մուհամմեդի (Խ.Ա.Ո.Ն) նախահայրը:

**3. Աստված կդնի իր խոսքերը այդ մարգարեի շուրթերին**

Աստծո խոսքերը (Սուրբ Ղուրանը) իրոք դրվել է Մուհամմեդի (Խ.Ա.Ո.Ն) շուրթերին: Աստված ուղարկել է Գաբրիել Հրեշտակին, ուսուցանելու Մուհամմեդին (Խ.Ա.Ո.Ն) Աստծո ճշգրիտ խոսքերը (Սուրբ Ղուրանը) և խնդրել է նրան թելադրել դրանք մարդկանց, ինչպես նա լսել է: Ուստի խոսքերը իրենը չեն: Դրանք չեն եկել իր իսկ մտքերից, սակայն դրել էր Գաբրիել Հրեշտակը: Մուհամմեդի (Խ.Ա.Ո.Ն) կյանքի և իսկողության ընթացքում այս խոսքերը այնուհետ հիշել և գրառել են նրա ուղեկցորդները:

Նշենք նաև, որ Աստված խոսել է մարգարեության մասին Երկրորդ Օրենքի մեջ.

**«Եթե որևէ մեկը չլսի իմ խոսքերը, որը իմ անունից ասում է մարգարեն, Ես Ինքս նրան հաշվի կկոչեմ»: (Երկրորդ Օրենք 18:19)**

Սա նշանակում է, որ ով հավատք է ընծայում Աստվածաշնչին պետք է հավատք ընծայի նրան, ինչ ասում է այս մարգարեն և այս մարգարեն Մուհամմեդն (Խ.Ա.Ո.Ն) է:

(Մուհամմեդի և Աստվածաշնչի Լրացուցիչ տեղեկությունների համար խնդրում ենք այցելեք www.islam-guide.com/mib կայքը):

---

[43]Տես սահմանային նշումները Նոր Միջազգային Տարբերակի Ուսումնական Աստվածաշնչի մեջ, Նոր Միջազգային Տարբերակ, տարբերակ 1:21 էջ.1594

# (4) Ղուրանական տարբերակները, որոնք նշում են ապագա իրադարձություններ, որոնք տեղի են ունենալու

Ղուրանի մեջ կանխագուշակած օրինակ է Պարսիկների հանդեպ Հռոմեացիների հաղթանակը պարտությունից երեք - ինը տարիներ անց: Ղուրանի մեջ Աստված ասում է.

**«Հռոմեացիները պարտության են մատնվել ամենամոտ հողի մեջ (Արաբական Թերակղզու) և նրանք, իրենց պարտությունից հետո, հաղթանակ կունենան բեդդ-ի (երեքից ինը տարի) ...» (Ղուրան 30:2-4)**

Եկեք տեսնենք թե ինչ է ասում պատմությունը այս պատերազմների մասին: «Բյուզանդական Պետության Պատմություն» գիրքը ասում է, որ Հռոմեական բանակը պարտություն կրեց Անտիոքում 613 թվականին և արդյունքում Պարսիկները արագ առաջ մղվեցին բոլոր ճակատներով:[44] Այդ ժամանակ դժվար էր պատկերացնել, որ Պարսիկները պարտության կմատնեն Հռոմեացիներին, սակայն Ղուրանը կանխագուշակեց, որ Հռոմեացիները հաղթանակ կունենան երեքից ինը տարիների ընթացքում: 622 թվականին, Հռոմեացիների պարտությունից 9 տարի անց, Հռոմեական և Պարսկական զորքերը հանդիպեցին Հայկական հողում և արդյունքում առաջին անգամ տեղի ունեցավ Հռոմեացիների վճռական հաղթանակը 613 թվականի[45] պարտությունից հետո: Մարգարեությունը ի կատար ածվեց ճիշտ այնպես, ինչպես Աստված ասել էր Ղուրանի մեջ:

Նույնպես,Ղուրանի մեջ առկա են այլ տարբերակներ , Մարգարեի (Խ.Ա.Ո.Ն) խոսքեր, որոնք նշում են հետագայում տեղի ունեցող դեպքերը:

# (5) Մարգարե Մուհամմեդի (խ.ա.ո.ն) ներկայացրած հրաշքները

Աստծո թույլտվությամբ Մարգարե Մուհամմեդը (Խ.Ա.Ո.Ն) շատ հրաշքներ ներկայացրեց: Շատերը ականատես են եղել դրանց: Օրինակ.

j[44] Բյուզանդական Պետության Պատմությունը, Օստրոգորսկի էջ.95
[45]Բյուզանդական Պետության Պատմությունը, Օստրոգորսկիէջ.100-101և Պարսկաստանի Պատմություն Սայքս հատոր1 էջ.483-484: Նույնպես տես Բրիտանիկա Նոր Հանրագիտարան,Միքրոփեդիա հատոր 4 էջ.1036

- Երբ Մեքքայում անհավատները Մարգարե Մուհամմեդին (Խ.Ա.Ո.Ն) խնդրեցին հրաշք ներկայացնել իրենց, նա ցույց տվեց լուսնի պառակտումը:[46]
- Մեկ այլ հրաշք էր ջուրը, որը հոսում էր Մուհամմեդի (Խ.Ա.Ո.Ն) ձեռքերի միջով, երբ նրա ուղեկցորդները ծարավ էին և չունեին ջուր, բացառությամբ մի փոքր տարայի: Նրանք մոտեցան նրան և ասացին, որ ջուր չունեն լվացման կամ խմելու համար բացառությամբ մեկ տարայի: Այսպիսով, Մուհամմեդը (Խ.Ա.Ո.Ն) իր ձեռքը դրեց տարայի մեջ և ջուրը սկսեց հորդել նրա մատների արանքից: Այսպիսով նրանք ըմպեցին և լվացում կատարեցին: Ուղեկցորդների քանակը հասնում էր հազար հինգ հարյուրի:[47]

Գոյություն ունեն շատ այլ հրաշքներ, որոնք նա ներկայացրել է, կամ որոնք պատահել են նրա հետ:

# (6) Մուհամմեդի (խ.ա.ո.ն) պարզ կյանքը

Եթե մենք համեմատենք Մուհամմեդի (Խ.Ա.Ո.Ն) կյանքը մինչ իր առաքելությունը որպես մարգարե և նրա կյանքը առաքելությունից անց, մենք կարող ենք եզրահանգել, որ անհիմն է կարծել, որ Մուհամմեդը (Խ.Ա.Ո.Ն) կեղծ մարգարե էր, ով իր մարգարեությունը հայտնել էր նյութական բարիք, հզորություն, իշխանություն կամ փառք ձեռք բերելու համար:

Մինչ իր մարգարեական առաքելությունը,Մուհամմեդը (Խ.Ա.Ո.Ն) չուներ ֆինանսական խնդիրներ: Որպես հաջողակ և համբավ ունեցող վաճառական, Մուհամմեդը (Խ.Ա.Ո.Ն) ստացավ բավարար և հարմար շահույթ: Իր մարգարեական առաքելությունից անց և այդ պատճառով նրա նյութական վիճակը վատթարացավ:Առավել պարզաբանությունների համար, եկեք թերթենք նրա կյանքի հետևյալ խոսքերը.

- Աիշան, Մուհամմեդի (Խ.Ա.Ո.Ն) կինը ասաց. «Օվ, իմ զարմիկ, Մարգարեի (Խ.Ա.Ո.Ն) տանը երկու լուսնային ամիսներ, մենք կրակ չենք վառել սնունդ պատրաստելու համար»: Նրա զարմիկը հարցրեց. «Օվ մորաքույր, ի՞նչն էր ձեզ սնում»: Նա պատասխանեց. «Երկու սև բան, արմավ և ջուր, սակայն Մարգարեն (Խ.Ա.Ո.Ն) ուներ մի քանի Անսար հարևաններ, ովքեր ունեին կթու իգական ուղտ և նրանք սովորություն ունեին կաթ ուղարկել Մարգարեին (Խ.Ա.Ո.Ն)»:[48]

---

[46] Հաղորդել է Սահիհ Ալ-Բուխարին համար 3637 և Սահիհ Մուսլիմ համար 2802
[47] Հաղորդել է Սահիհ Ալ-Բուխարին համար 3576 և Սահիհ Մուսլիմ համար 1856
[48] Հաղորդեց Սահիհ Մուսլիմ համար 2972 և Սահիհ Ալ-Բուխարի համար 2567

- Սահլ Իբն Սաադը, Մարգարեի (Խ.Ա.Ո.Ն) ուղեկցորդներից մեկը ասաց. «Աստծո Մարգարեն (Խ.Ա.Ո.Ն) սկսած այն պահից, երբ Աստված ուղարկեց նրան մինչ իր մահ, բարձրորակ ալյուրից հաց չտեսավ»[49]
- Աիշան, Մուհամմեդի (Խ.Ա.Ո.Ն) կինը ասաց. «Մարգարեի (Խ.Ա.Ո.Ն) ներքնակը, որի վրա նա քնում էր, պատրաստված էր կաշվի մեջ լցոնված արմավենու ծառի մանրաթելերից»:[50]
- Ամր Իբն Ալ-Հարիթը, Մուհամմեդի (Խ.Ա.Ո.Ն) ուղեկցորդներից մեկը, ասաց,որ երբ Մարգարեն կնքեց մահկանացուն, նա չթողեց ոչ գումար, ոչ էլ այլ որևէ բան, բացի իր սպիտակ ջորուց, զենքերից և փոքր հողատարածքից, որը նա թողեց որպես բարեգործություն:[51]

Մուհամմեդը (Խ.Ա.Ո.Ն) մինչ մահ ապրեց իր ծանր կյանքը,չնայած Մահմեդականների գանձերը նրա ղեկավարության ներքո էին, մինչ նրա մահը Արաբական Թերակղզու մեծամասնությունը արդեն մահմեդականներ էին և նրա առաքելությունից տասնութ տարի անց, նրանք արդեն հաղթանակած էին:

Արդյո՞ք հնարավոր էր, որ Մուհամմեդը (Խ.Ա.Ո.Ն) հայտներ իր մարգարեությունը դիրք, հզորություն և իշխանություն ձեռք բերելու համար:Դիրք և իշխանություն վայելելու ցանկությունը սովորաբար ուղեկցվում է լավ սնունդի, գեղեցիկ հանդերձի, հոյակերտ պալատների, պահապանների և անվիճելի հեղինակության հետ:Արդյո՞ք այս ցուցանիշներից որևէ մեկը վերաբերում է Մուհամմեդին (Խ.Ա.Ո.Ն): Նշենք նրա կյանքի մի քանի ակնարկներ, որոնք կարող են պատասխանել այս հարցերին:

Անկախ նրա պատասխանատվությունից որպես մարգարե, ուսուցիչ, դատավոր, գործիչ, Մուհամմեդը (Խ.Ա.Ո.Ն) սովոր էր ինքը կթել իր այծը[52] , կարկատել իր հանդերձը, վերանորոգել իր կոշիկը[53], օգնել տնային տնտեսության մեջ և այցելել աղքատներին, երբ նրանք տկար էին:[54] Նա նույնպես օգնում էր իր ուղեկցորդներին առուներ փորել, նրանց հետ հեռացնելով ավազը:[55] Նրա կյանքը հանդիսանում է պարզության և համեստության հոյակապ օրինակ:

Մուհամմեդի (Խ.Ա.Ո.Ն) հետևորդները զարմանալիորեն սիրում, հարգում և վստահում էին նրան: Սակայն նա շարունակում էր շեշտել, որ աստվածացումը պետք է ուղղել Աստծուն և ոչ թե իր անձին: Անասը,

---

[49] Հաղորդեց Սահիհի Ալ-Բուխարին համար 5413 և Ալ-Թիրմիզի համար 2364
[50] Հաղորդեց Սահիհ Մուսլիմ համար 2082 և Սահիհ Ալ Բուխարի համար 6456
[51] Հաղորդեց Սահիհ Ալ-Բուխարին համար 2739 և Մոսնադ Ահմադ համար 17990
[52] Հաղորդել է Մուսնադ Ահմեդ համար 25662
[53] Հաղորդել է Սահիհ Ալ Բուխարին համար 676 և Մուսնադ Ահմեդ համար 25517
[54] Հաղորդել է Մուվաթթա Մալեք համար 531
[55] Հաղորդել է Սահիհի Ալ-Բուխարին համար 3034 և Սահիհ Մուսլիմ համար 1803 և Մուսնադ Ահմեդ համար 18017

Մուհամմեդի (Խ.Ա.Ո.Ն) ուղեկցորդներից մեկը ասաց, որ ոչ ոք գոյություն չուներ, ում նրանք սիրեին Մուհամմեդից (Խ.Ա.Ո.Ն) առավել, սակայն երբ նա գալիս էր նրանց մոտ, նրանք ոտքի չէին կանգնում, որովհետև նա չէր սիրում, երբ նրանք ոտքի էին կանգնում[56], ինչպես վարվում էին այլ մարդիկ, իրենց մեծերի նկատմամբ:

Մինչ Իսլամի հաջողության հեռանկարը և Մուհամմեդի (Խ.Ա.Ո.Ն) և նրա հետևորդների տանջանքների, խոշտանգումների, հալածանքների երկար ժամանակաշրջանը, նա մի հետաքրքիր առաջարկ ստացավ: Հեթանոս առաջնորդների ղեկավար Օթբան, եկավ նրա մոտ և ասաց. *«…Եթե դու ունես գումարի ցանկություն, մենք կարող ենք քեզ համար բավարար գումար հավաքել, որպեսզի դու լինես մեզանից ամենահարուստը: Եթե դու ունես ղեկավարելու ցանկություն, մենք քեզ կընդունենք որպես մեր ղեկավար և առանց քո խրախուսանքի երբեք ոչ մի որոշում չենք կայացնի: Եթե դու ունես թագավորության ցանկություն, մենք կթագադրենք քեզ մեր արքա…»:* Նրանք Մուհամմեդից (Խ.Ա.Ո.Ն) պահանջում էին միայն մեկ զիջում, նա պետք է դադարեր մարդկանց կոչել առ Իսլամ և երկրպագել միայն Աստծուն առանց գործընկերոջ: Արդյո՞ք այս առաջարկը չէր կարող գայթակղիչ լինել մեկի համար, ում հետաքրքիր էր աշխարհիկ բարիքները: Արդյո՞ք Մուհամմեդը (Խ.Ա.Ո.Ն) տատանվեց, երբ նրան արվեց առաջարկը: Արդյո՞ք նա ձեռնպահ մնաց որպես սակարկելի ռազմավարություն, հնարավորություն տալով ավելի լավ առաջարկի: Նրա պատասխանը հետևյալն էր. «**Աստծո Անունով, Ամենաբարեգութ**, **Ամենաողորմած**» և նա Օթբային ընթերցեց Ղուրան 41:1-38[57] տարբերակները: Ահա այդ տարբերակներից մի քանիսը.

**«Աստծո, Ամենագթասիրտ, Ամենաողորմած, հայտնության, Գրքի, վերոհիշյալ տարբերակները մանրամասնորեն բացատրում են, Ղուրանը Արաբերեն լեզվով, մարդկանց համար, ովքեր տեղյակ են, ավետիս և զգուշացում, քանի որ նրանց մեծամասնությունը շրջվում են, այնպես որ նրանք չեն լսում»: (Ղուրան 41:2-4)**

Մեկ այլ առիթով և ի պատասխան իր հորեղբոր խնդրանքի դադարեցնել մարդկանց կոչել առ Իսլամ, Մուհամմեդի (Խ.Ա.Ո.Ն) պատասխանը որոշիչ և անկեղծ էր. **«Ես երդվում եմ Աստծո անունով, օվ հորեղբայր, որ, եթե նրանք տեղադրեն արևը իմ աջ ձեռքում և լուսինը իմ ձախ ձեռքում ի հատուցում դադարեցնել այս խնդիրը, մարդկանց կոչել առ Իսլամ, ես երբեք չեմ դադարի, մինչ կամ Աստված հաղթանակ պարգևի կամ ես անհայտանամ պաշտպանելով այն»:**[58]

Մուհամմեդը (Խ.Ա.Ո.Ն) և նրա հետևորդները տասներեք տարի ոչ միայն տառապում էին հալածանքներից, այլև անհավատները մի քանի անգամ նույնիսկ փորձեցին սպանել Մուհամմեդին (Խ.Ա.Ո.Ն): Մեկ անգամ

---

[56] Հաղորդել է Մուսնադ Ահմեդ համար 12117 և Ալ-Թիրմիզի համար 2754
[57] Ալ-Սիրահ Ալ-Նաբաուիյյահ, Իբն Հիշամ հատոր 1 էջ.293-294
[58] Ալ-Սիրահ Ալ-Նաբաուիյյահ, Իբն Հիշամ հատոր1. էջ. 265-266

նրանք փորձեցին սպանել նրան քարի մեծ կտորով, որը հազիվ հնարավոր էր բարձրացնել նրա գլխին:[59] Մեկ այլ անգամ նրանք փորձեցին սպանել նրան թունավորելով սնունդը:[60] Ինչը կարող է արդարացնել նմանատիպ տանջանքների և զոհաբերության տառապանքը, նույնիսկ այն բանից հետո, երբ նա լիովին հաղթել էր իր հակառակորդներին: Ի՞նչը կարող է բացատրել համեստությունը և ազնվությունը, որը նա ներկայացրեց իր ամենաառաքինի պահերին, երբ նա պնդեց, որ հաջողությունը շնորհիվ Աստծո օգնության է և ոչ թե իր իսկ հանճարեղության: Արդյո՞ք սրանք հանդիսանում են իշխանության ծարավ ունեցող կամ ինքնասեր մարդու բնութագիր:

# (7) Իսլամի բացառիկ աճը

Որպես գլխի ավարտ, նպատակահարմար է նշել Իսլամի ճշմարտության մի կարևոր ցուցանիշ: Հայտնի է, որ ԱՄՆ-ում և ամբողջ աշխարհում, Իսլամը հանդիսանում է արագ աճող կրոն: Հետևյալ դիտարկումները հանդիսանում են այս երևույթի որոշակի ապացույցները.

- *«Իսլամը հանդիսանում է Ամերիկայի ամենաարագ զարգացող կրոնը, մեր մարդկանց ուղեցույցը և կայունության սյունը...»* (Հիլարի Ռոդհամ Քլինթոն, Լոս Անջելոս Թայմս): [61]
- *«Մահմեդականները հանդիսանում են աշխարհի ամենաարագ աճող խումբը...»* (Բնակչության Քաղվածքի Բյուրո, ԱՄՆ Այսօր):[62]
- *«...Իսլամը հանդիսանում է երկրի ամենաարագ աճող կրոնը»:* (Ջերալդին Բաում, Նյուզդեյ Կրոնական Հեղինակ, Նյուզդեյ): [63]
- *«Իսլամը հանդիսանում է ամենաարագ աճող կրոնը Ամերիկայի Միացյալ Նահանգներում...»* (Արի Լ. Գոլդման, Նյու Յորք Թայմս)[64]

Այս երևույթը նշում է, որ Իսլամը հանդիսանում է Աստծո ճշմարիտ կրոնը: Անտրամաբանական է կարծել, որ այդքան շատ ամերիկացիներ և տարբեր երկրների մարդիկ Իսլամը ընդունում են առանց ուշադիր նկատառման և խորը զննման մինչ եզրահանգումը, որ Իսլամը

---

[59] Ալ-Սիրահ Ալ-Նաբաուիյյահ, Իբն Հիշամ, հատոր 1 էջ.28-299

[60] Հաղորդել է Ալ-Դարեմիյան համար 68 և Աբու Դաուդ համար 4510

[61] Լարի Բ. Սթեմմարը, Թայմսի Կրոնական հեղինակը, «Առաջին Տիկինը մահմեդականների հետ կիսում է մտքերը»: Լոս Անջելես Թայմս, Հոմ Հրատարակություն, Մետրո Հատված, Մաս Բ, Մայիս 31 1996, էջ.3

[62] Թիմոթի Քեննի. «Աշխարհի որևէ վայրում» ԱՄՆ , Այսօր, Վերջնական Հրատարակություն, Նորությունների Հատված, Փետրվար 17, 1989, էջ.4

[63] Ջերալդին Բաում, «Հանուն Ալլահի Սիրո» Նյուզդեյ, Նասսաու և Սուֆֆոլք Հրատարակություն, Մաս 2 Մարտ 7.1989 էջ.4

[64] Արի Լ. Գոլդման «Մինչդեռ Սևամորթ Ամերիկացիները արագ կերպով ընդունում են Իսլամը»; Նյու Յորք թայմս, Լեյթ Սիթի Ֆինալ Հրատարակություն, փետրվար 21 1989 էջ.1

հանդիսանում է ճշմարիտ: Այս մարդիկ գալիս են տարբեր երկրներից, դասակարգերից, ռասսաներից և խավերից: Նրանց մեջ են գտնվում գիտնականներ, պրոֆեսորներ, փիլիսոփաներ, լրագրողներ, քաղաքագետներ, դերասաններ և մարզիկներ:

Այս գլխի մեջ զետեղված կետերը, կազմում են միայն մի քանի վկայություններ, որոնք աջակցում են այն հավատքին, որ Ղուրանը հանդիսանում է Աստծո գրական խոսքը, Մուհամմեդը (Խ.Ա.Ո.Ն) Աստծո ճշմարիտ մարգարեն և Իսլամը Աստծո ճշմարիտ կրոն:

# ԳԼՈՒԽ 2
# ԻՍԼԱՄԻ ՈՐՈՇ ԱՌԱՎԵԼՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Իսլամը շատ առավելություններ է ներկայացնում անհատներին և հասարակությանը: Հետևյալ գլուխը նշում է այն առավելությունները, որոնք մարդիկ ձեռք են բերում Իսլամի շնորհիվ:

## (1) Հավերժ դրախտի դուռը

Ղուրանի մեջ Աստված ասում է.

**«Եվ ավետիս տուր նրանց , (օվ Մուհամմեդ), ովքեր հավատք են ընծայում և բարիք են գործում, որ նրանք կմտնեն այգիները Դրախտի , որտեղ գետեր են հոսում...»: (Ղուրան 2:25)**

Աստված նույնպես ասաց.

**«Մրցեք միմյանց հետ ձեր Տիրոջ թողության և Դրախտի համար, որը այնքան ընդարձակ է որքան երկինքները և երկիրը, որը պատրաստվել է նրանց համար, ովքեր հավատք են ընծայել Աստծուն և նրա մարգարեներին...» (Ղուրան 57:21)**

Մարգարե Մուհամմեդը (Խ.Ա.Ո.Ն) մեզ տեղեկացրեց, որ Դրախտի ամենացածր դասի բնակիչները կունենան այս աշխարհի[65] տաս անգամ նմանատիպը և նա կունենա տաս անգամ ավելին այնի, ինչի ցանկություն ունի:[66]

Նույնպես, Մարգարե Մուհամմեդն (Խ.Ա.Ո.Ն) ասաց. **«Դրախտի տարածությունը համապատասխան է ոտնաչափի, որը կլինի ավելի լավը քան աշխարհը և այնտեղ գտնվող ամենը»:**[67]

Նա նույնպես ասաց. **«Դրախտի մեջ առկա են բաներ,որ ոչ մի աչք չի կարող տեսել, ունկ ունկնդրել և մարդկային միտքը կարծել»:**[68]

Նա նույնպես ասաց. **«Առավել թշվառ մարդը աշխարհում, ում համար նախատեսված է Դրախտը կընկղմի այնտեղ, այնուհետ նրան կհարցնեն. «Ադամի որդի, արդյո՞ք դու հանդիպել ես որևէ թշվառության: Արդյո՞ք երբևէ փորձել ես դժվարություն»: Այսպիսով նա կասի.«Ոչ, հանուն Աստծո, Օվ Տեր: Ես երբեք չեմ հանդիպել որևէ թշվառության և ես երբեք չեմ փորձել դժվարություն»:**[69]

---

[65] Հաղորդեց Սահիհ Մուսլիմ համար 184 և Սահիհ Ալ-Բուխարի համար 6571
[66] Հաղորդեց Սահիհ Մուսլիմ համար 188 և Մուսնադ Ահմեդ համար 10832
[67] Հաղորդեց Սահիհ Ալ-Բուխարին համար 6568 և Մուսնադ Ահմեդ համար 13368
[68] Հաղորդեց Սահիհ Մուսլիմ համար 2825 և Մուսնադ Ահմեդ համար 8609
[69] Հաղորդել է Սահիհ Մուսլիմ համար 2807 և Մուսնադ Ահմեդ համար 12699

Եթե դուք Դրախտ մտնեք,դուք կապրեք երջանիկ կյանք առանց հիվանդության, ցավի, տխրության կամ մահի: Աստված գոհ կլինի ձեզանից և դուք կբնակվեք այնտեղ հավերժ: Աստված ասում է Ղուրանի մեջ.

**«Սակայն նրանք, ովքեր հավատք են ընծայում և բարիք են գործում, Մենք կընդունենք նրանց այգիներ, Դրախտ, որտեղ գետեր են հոսում, բնակվելու այնտեղ հավերժ...» (Ղուրան 4:57)**

(Խնդրում ենք այցելեք www.islam-guide.com/hereafter Դրախտի և մահվան հաջորդող կյանքի լրացուցիչ տեղեկությունների համար):

# (2) Դժոխքի կրակի փրկություն

Ղուրանի մեջ Աստված ասում է.

**«Նրանք, ովքեր չեն հավատացել և անհավատության մեջ կնքել են մահկանացուն, նրանցից չեն ընդունի ոսկով լի երկիրը, եթե հանձնեն որպես փրկագին: Նրանք կունենան տանջալից պատիժ և նրանք չեն ունենա ոչ մի օգնական»: (Ղուրան 3:91)**

Այսպիսով այս կյանքը հանդիսանում է միակ հնարավորությունը շահել Դրախտը և փախչել Դժոխքի Կրակից, որովհետև, եթե որևէ մեկը անհավատության մեջ կնքում է մահկանացուն, նա չի ունենում այլ հնարավորություն վերադառնալ այս աշխարհ որպեսզի հավատա: Ինչպես Ղուրանի մեջ Աստված ասել է, թե ինչ է տեղի ունենում անհավատների հետ Դատաստանի Օրը.

**«Եթե դուք ի վիճակի լինեիք տեսնել, երբ նրանց մոտեցնեն կրակը (Դժոխքը) և ասեն. «Ցանկանում եք, որ մենք վերադարձնենք աշխարհ»: Այնուհետ մենք չենք ժխտի մեր Տիրոջ տարբերակները, սակայն մենք կլինենք հավատացյալներից»: (Ղուրան 6:27)**

Մարգարե Մուհամմեդն (Խ.Ա.Ո.Ն) ասաց. **"Ամենաերջանիկ մարդը նրանց աշխարհում, ովքեր դատապարտված են Կրակի (Դժոխքի) Դատաստանի Օրը, կընկղմվեն Կրակի մեջ մեկ անգամ: Այնուհետ նրան կհարցնեն. «Ադամի որդի, արդյո՞ք դու տեսել ես որևէ բարիք: Արդյո՞ք դու փորձել ես որևէ օրհնանք:" Այսպիսով նա կասի." Ոչ, Աստծո անունով, ով Տեր»:** [70]

# (3) Իրական ճշմարտություն և ներքին խաղաղություն

[70] Հաղորդեց Սահիհ Մուսլիմ համար 2807 և Մուսնադ Ահմեդ համար 12699

Իրական երջանկություն և խաղաղություն կարելի է գտնել հնազանդվելով այս աշխարհի Արարչի և Պաշտպանի պատվիրաններին:Ղուրանի մեջ Աստված ասում է.

**«Իրոք, Աստծո հիշատակությունը հանգստություն է պարգևում»: (Ղուրան 13:28)**

Մյուս կողմից, նա, ով շրջվում է Ղուրանից այս աշխարհում կունենա դժվար կյանք: Աստված ասում է.

**«Սակայն նա, ով շրջվում է Ղուրանից[71] կունենա դժվար կյանք և Մենք Դատաստանի օրը նրան կույր հարություն կտանք»: (Ղուրան 20:124)**

Այս կարող է բացատրել, թե ինչու որոշ մարդիկ ինքնասպանություն են գործում, երբ վայելում են նյութական հարմարավետություն, ինչը կարող են գումարով գնել: Օրինակ, տեսեք Քեթ Սթիվենսին, այժմ Յուսուֆ Իսլամին, նախկին հայտնի երգչին, ով սովոր էր մեկ գիշերվա ընթացքում երբեմն վաստակել 150,000 դոլար:Իսլամ ընդունելուց հետո, նա գտավ իրական երջանկություն և խաղաղություն,որը նա չէր գտել նյութական հաջողության մեջ:[72]

Իսլամ ընդունած մարդկանց պատմությունները ընթերցելու համար խնդրում ենք այցելեք www.islam-guide.com/stories կամ ընթերցեք 'Ինչու է Իսլամը հանդիսանում մեր ընտրությունը'[73] աշխատությունը: Այս կայքում և գրքի մեջ դուք կարող եք ընթերցել այն մարդկանց մտքերը և զգացմունքները, ովքեր տարբեր երկրներից են և ունեն տարբեր խավեր և կրթական մակարդակներ:

# (4) Նախկին բոլոր մեղքերի թողությունը

Երբ որևէ մեկը Իսլամ է ընդունում , Աստված ներում է նրա բոլոր նախկին մեղքերը և չար արարքները: Ամր անունով մի մարդ եկավ Մարգարե Մուհամմեդի (Խ.Ա.Ո.Ն) մոտ և ասաց.

**«Տուր ինձ քո աջ ձեռքը այնպես, որ ես ի վիճակի լինեմ տալ քեզ իմ հավատարմության գրավականը»: Մարգարեն (Խ.Ա.Ո.Ն) երկարեց իր աջ ձեռքը: Ամրը ետ պահեց իր ձեռքը: Մարգարեն (Խ.Ա.Ո.Ն)ասաց. «Ի՞նչ է կատարվում քեզ հետ, ով Ամր»: Նա պատասխանեց. «Ես մի պայման ունեմ»: Մարգարեն (Խ.Ա.Ո.Ն) հարցրեց. «Ի՞նչ պայման»: Ամրն ասաց. «Որ Աստված ների իմ**

---

[71] Այսինքն, ոչ հավատք է ընծայում Ղուրանին, ոչ էլ գործում է ըստ այդմ:
[72] Քեթ Սթիվենսի, Յուսուֆ Իսլամի ներկայիս էլ-հասցեն հետևյալն է 2 Digswell Street, London N7 8JX, United Kingdom և դուք կարող եք նրան ուղղել ձեր հարցերը:
[73] Այս գրքի հեղինակն է Մուհամմեդ Հ.Ծահիրը: Գրքի կրկնօրինակի համար այցելեք www.islam-guide.com/stories կայքը, կամ կապ հաստատեք վերոհիշյալ կազմակերպությունների հետ:

**մեղքերը»: Մարգարեն (Խ.Ա.Ո.Ն) ասաց. «Արդյո՞ք դու տեղյակ չես, որ Իսլամ ընդունելը մաքրում է նախկին բոլոր մեղքերը»:**[74]

Իսլամ ընդունելուց հետո անհատը պարգև է ստանում իր բարի և չար արարքների համար, ըստ Մարգարե Մուհամմեդի (Խ.Ա.Ո.Ն) հետևյալ խոսքերի.

**«Ձեր Տերը, Ով օրհնյալ և բարձրյալ է, ամենագթասիրտն է:Եթե որևէ մեկը մտադիր է բարիք գործել, սակայն չի գործում, բարի գործը գրառվում է նրա համար:Եվ, եթե նա ի կատար ածի դա, պարգև կստանա տասից յոթ հարյուր անգամ կամ ավելի և բարի գործի պարգևը գրառվում է նրա համար:Եվ, եթե որևէ մեկը մտադիր է չար արարք գործել, սակայն չի գործում դա, նրա համար գրառվում է բարի արարք: Եվ, եթե նա գործում է դա, ապա նրա դեմ գրառվում է վատ արարք, կամ Աստված մաքրում է»:**[75]

[74] Հաղորդեց Սահիհ Մուսլիմ համար 121 և Մուսնադ Ահմեդ համար 17357

[75] Հաղորդեց Մուսնադ Ահմեդ համար 2515 և Սահիհ Մուսլիմ համար 131

# ԳԼՈՒԽ 3
# ԸՆԴՀԱՆՈՒՐ ՏԵՂԵԿՈՒԹՅՈՒՆ ԻՍԼԱՄԻ ՄԱՍԻՆ
# Ի՞նչ է իսլամը

Իսլամ նշանակում է ընդունել և հնազանդվել Աստծո ուսմունքներին, որը Նա հայտնել է Իր վերջին մարգարեին, Մուհամմեդին (Խ.Ա.Ո.Ն):

# Իսլամական որոշ հիմնական հավատքները

**(1) Հավատք աստծուն.**

Մահմեդականները հավատք են ընծայում մեկ, եզակի, անհամեմատելի Աստծուն, Ով չունի ոչ որդի, ոչ գործընկեր և որ ոչ ոք չունի երկրպագության իրավունք, բացառությամբ միայն Նրա: Նա հանդիսանում է ճշմարիտ Աստված և ամեն յուրաքանչյուր աստվածություն կեղծ է: Նա ունի ամենահոյակապ անունները և վսեմ կատարյալ ածականները: Ոչ ոք չի կիսում Նրա աստվածությունը, ոչ էլ Նրա ածականները: Ղուրանի մեջ Աստված նկարագրում է Իրեն.

**«Ասա. «Նա Աստված է, Մեկը: Աստված Ում արարածները դիմում են իրենց կարիքների համար: Նա չի ծնում, ոչ էլ Նա ծնվել է և ոչ ոք գոյություն չունի Նրա պես»»: (Ղուրան 112:1-4)**

Չի կարելի կոչել, աղերսել, աղոթել կամ ցուցադրել երկրպագության որևէ գործողություն որևէ մեկին, բացառությամբ միայն Աստծո:



Ղուրանի 112 գլուխը, որը գրված է արաբերեն գեղագրությամբ:

Աստված ինքնին Ամենաբարձրյալն է, Արարիչը, Ինքնիշխանը և ամբողջ տիեզերքի ամենի Մատակարարը: Նա կառավարում է ամենը: Նա չունի Իր արարածներից որևէ մեկի կարիքը, և Նրա բոլոր արարածները իրենց կարիքներով կախված են Նրանից: Նա ամենատես, ամենը ունկնդրող և ամենագիտակն է: Կատարյալ ձևով Նրա գիտելիքը ներառում է ամենը, բացահայտ և գաղտնի , հասարակական և մասնավոր: Նա տեղյակ է, թե ինչ է տեղի ունեցել, ինչ տեղի կունենա և ինչպես տեղի կունենա: Ամբողջ աշխարհում ոչինչ տեղի չի ունենում առանց Նրա կամքի:Ինչ նա ցանկանում է, տեղի է ունենում և ինչ Նա չի ցանկանում, տեղի չի ունենում և երբեք չի ունենա: Նրա կամքը վեր է բոլոր արարածների կամքից: Նա ունի ամենի իշխանությունը և Նա ի վիճակի է կատարել ամենը: Նա Ամենափառավոր և Ամենագթասիրտ և Ամենաբարերարն է: Իր խոսքերից մեկի մեջ Մարգարե Մուհամմեդը (Խ.Ա.Ո.Ն) ասաց, որ Աստված ավելի գթասիրտ է Իր արարածների նկատմամբ, քան մայրը զավակի:[76] Աստված զերծ է անարդարությունից և բռնապետությունից: Նա Ամենաիմաստունն է Իր բոլոր արարքների և որոշումների մեջ: Եթե որևէ մեկը Աստծուց ցանկանում է որևէ բան, նա կարող է ուղղակիորեն խնդրել դա, առանց որևէ մեկի միջնորդության:

Աստված Հիսուսը չէ և Հիսուսը Աստված չէ:[77] Նույնիսկ, Հիսուսը ինքը ժխտում է սա: Ղուրանի մեջ Աստված ասում է.

**«Իրոք, նրանք ովքեր ասում են, որ «Աստված հանդիսանում է Մեսսիա, Հիսուս, Մարիամի որդի» հավատք չեն ընծայում: Մեսսիան ասաց. «Իսրայելի զավակներ, երկրպագեք Աստծուն, իմ Տիրոջը և ձեր Տիրոջը: Նա, ով գործընկեր է վերագրում Աստծո երկրպագության հետ, Աստված նրա համար արգելում է Դրախտը և նրա տունն է Կրակը,(Դժոխքը): Սխալվողների [78] համար գոյություն չունեն օգնականներ»: (Ղուրան 5:72)**

Աստված երրորդություն չէ: Ղուրանի մեջ Աստված ասում է.

**« Իրոք նրանք, ովքեր ասում են, որ «Աստված երեքից երրորդն է երրորդության մեջ» երբ գոյություն չունի ոչ մի աստված բացառությամբ մեկ Աստծո, հավատք չեն ընծայել: Եթե նրանք չհրաժարվեն իրենց խոսքերից, իրոք ցավալի պատիժ կպատահի նրանցից անհավատներին: Արդյո՞ք նրանք չեն ապաշխարհի Աստծուն և խնդրի Նրա թողությունը: Քանի որ Աստված Ամենաներող, Ամենագթասիրտն է: Մեսսիան,**

---

[76] Հաղորդել է Սահիհ Մուսլիմ համար 2754 և Սահիհ Ալ-Բուխարին համար 5999

[77] 1984 թվականի հունիսի 25 Լոնդոնի Միացյալ Մամուլը հաղորդեց, որ Անգլիկան եպիսկոպոսների մեծամասնությունը հեռուստատեսական ծրագրի հարցման ընթացքում ասել են, «Քրիստոնյաները ստիպված չեն հավատալ, որ Հիսուսը քրիստոսը Աստված է»: Հարցմանը մասնակցել են 39 եպիսկոպոսներից 31: Այնուհետ զեկույցը հայտնեց, որ 31 եպիսկոպոսներից 19 ասել են որ բավարար է Հիսուսին համարել «Աստծո գերագույն գործակալ»: Հարցազրույցը իրականացրել է Լոնդոնի Շաբաթօրյա Հեռուստատեսության կրոնական «Քրեդո» ծրագիրը:

[78] Սխալվողների մեջ մտնում են նաև բազմաստվածները :

**Հիսուսը, Մարիամի որդին, ոչ ավելին էր քան մարգարե...» (Ղուրան 5:73-75)**

Իսլամը ժխտում է, որ Աստված հանգստացել է արարման յոթերորդ օրը, որ Նա մարտի մեջ մտավ Իր հրեշտակներից մեկի հետ , որ Նա մարդկության խանդոտ ծրագրավորողն է, կամ, որ Նա ինչ որ մարդկային էակ է մարմնավորվել: Իսլամը նույնպես ժխտում է որևէ մարդու վերագրությունը Աստծո:Այս ամենը համարվում են անարգանք:Աստված Բարձրյալ է: Նա զերծ է ամեն անկատարից: Նա երբեք չի հոգնում, թմրում, կամ քնում:

Արաբերեն Ալլահ բառը նշանակում է Աստված, մեկը և միակ ճշմարիտ Աստվածը, ով արարել է ամբողջ տիեզերքը: Ալլահ բառը Աստծո անունն է, որը կիրառում են արաբախոսները և արաբ մահմեդականները և արաբ քրիստոնյաները: Այս բառը չի կարելի կիրառել բնութագրելու որևէ այլ բան, բացի մեկ ճշմարիտ Աստծուց: Արաբերեն Ալլահ բառը Ղուրանի մեջ կարելի է հանդիպել 2150 անգամ:Արամերեն լեզվի մեջ, որը սերտ կապված է արաբերենի հետ, մի լեզու է, որը կիրառել է Հիսուսը [79] ,Աստծուն նույնպես վերաբերվում են որպես Ալլահի:

## (2) Հավատք հրեշտակներին

Մահմեդականները հավատք են ընծայում հրեշտակների գոյությանը և որ նրանք հանդիսանում են պատվելի արարածներ:Հրեշտակները երկրպագում են միայն Աստծուն, հնազանդ են Նրան և գործում են միայն ըստ Նրա պատվիրանների: Հրեշտակներից են Գաբրիելը, ով Ղուրանը իջեցրեց Մուհամմեդին (Խ.Ա.Ո.Ն):

## (3) Հավատք աստծո հայտնած գրքերին

Մահմեդականները հավատք են ընծայում, որ Աստված գրքերը հայտնել է Իր մարգարեներին, որպես մարդկության ապացույց և ուղեցույց: Այդ գրքերից մեկը Ղուրանն է, որը Աստված հայտնել է Մարգարե Մուհամմեդին (Խ.Ա.Ո.Ն): Աստված երաշխավորել է Ղուրանի պաշտպանությունը, յուրաքանչյուր կոռուպցիայից և աղավաղումից: Աստված ասել է.

**«Իրոք, Մենք ուղարկել ենք Ղուրանը և իրոք, Մենք կպաշտպանենք այդ կոռուպցիայից»: (Ղուրան 15:9)**

## (4) Հավատք աստծո մարգարեներին և առաքյալներին

Մահմեդականները հավատք են ընծայում Աստծո մարգարեներին և առաքյալներին,սկսած Ադամից, ներառելով Նոյին, Աբրահամին, Իսմայելին, Իսահակին, Հակոբին, Մովսեսին և Հիսուսին: Սակայն Աստծո վերջանական ուղերձը մարդուն և հավերժ ուղերձի հաստատումը հայտնվել է Մարգարե Մուհամմեդին(Խ.Ա.Ո.Ն):Մահմեդականները

[79] Նոր Միջազգային Տարբերակ Աստվածաշնչի Հակիրճ Բառարան, Դուգլաս էջ.42

հավատք են ընծայում, որ Մուհամմեդը (Խ.Ա.Ո.Ն) հանդիսանում է Աստծո վերջին մարգարեն, ինչպես ասում է Աստված.

**«Մուհամմեդը չի հանդիսանում ձեր մարդկանցից որևէ մեկի հայրը, այլ Աստծո Մարգարեն և առաքյալներից վերջինը...»: (Ղուրան 33:40)**

Մահմեդականները հավատք են ընծայում,որ բոլոր առաքյալները և մարգարեները մարդ արարածներ էին, ովքեր չունեին ոչ մի Աստվածային հատկանիշ:

### (5) Դատաստանի օրվա հավատքը

Մահմեդականները հավատք են ընծայում Դատաստանի Օրվան (Հարության Օրվան), երբ բոլոր մարդիկ հարություն կառնեն Աստծո դատաստանի համար, ըստ իրենց հավատքների և արարքների:

### (6) Հավատք ալ-քադարին

Մահմեդականները հավատք են ընծայում Ալ-Քադարին, որը հանդիսանում է Աստվածային ճակատագիրը, սակայն այս հավատքը չի նշանակում, որ մարդ արարածը չունի ազատ կամք:Հակառակը, մահմեդականները հավատք են ընծայում, որ Աստված մարդ արարածին տվել է ազատ կամք: Սա նշանակում է, որ նրանք կարող են ընտրել ճիշտը և սխալը և որ նրանք պատասխանատու են իրենց ընտրությունների համար:

Աստվածային ճակատագրի հավատքը ներառում է չորս փաստերի հավատք. 1. Աստված տեղյակ է ամենից: Նա տեղյակ է, թե ինչ է տեղի ունեցել և ինչ է տեղի ունենալու: 2. Աստված գրառել է ամենը, ինչ տեղի է ունեցել և ինչ տեղի է ունենալու: 3. Տեղի է ունենում այն, ինչ Աստված ցանկանում է, ինչ Նա չի ցանկանում տեղի չի ունենում: 4. Աստված հանդիսանում է ամենի արարիչը:

(Հիմնական Իսլամական հավատքի մասին լրացուցիչ տեղեկությունների համար խնդրում ենք այցելել www.islam-guide.com/beliefs.)

# Արդյո՞ք գոյություն ունի մեկ այլ սուրբ աղբյուր, բացի ղուրանից

Այո, Սուննան Մարգարե Մուհամմեդի խոսքերը և արարքները հանդիսանում են Իսլամի երկրորդ աղբյուրը: Սուննան բաղկացած է պատումներից, որոնք հուսալիորեն փոխանցել են Մարգարե Մուհամմեդի (Խ.Ա.Ո.Ն) ուղեկցորդները: Սուննայի հավատքը հանդիսանում է հիմնական Իսլամական հավատքը:

# Մարգարե մուհամմեդի (Խ.Ա.Ո.Ն) օրինակները և ասացվածքները

{Հավատացյալները, միմյանց նկատմամբ իրենց սիրով, գթասրտությամբ և բարությամբ նման են մարմնի, եթե որևէ մասը հիվանդ է, ապա ամբողջ մարմինը կիսում է իր քնկոտությունը և ջերմը:}[80]

{Հավատացյալներից ամենակատարյալը նրանք են, ովքեր լավագույնն են բարքերի մեջ: Եվ լավագույնը նրանցից հանդիսանում են նրանք, ովքեր լավագույնն են իրենց կանանց հետ:}[81]

{Ձեզանից ոչ ոք չի հավատում կատարյալ ձևով, եթե նա չի սիրում իմ եղբոր համար այն, ինչ սիրում է իր համար: }[82]

{Գթասրտին գթասրտություն է ցուցաղրում Ամենագթասիրտը: Ցույց տուր գթասրտություն նրանց, ովքեր երկրի վրա են և Աստված քեզ ցույց կտա գթասրտություն: }[83]

{ Եղբորը ժպիտ պարգևելը համարվում է բարեգործություն:}[84]

{Բարի խոսքը համարվում է բարեգործություն }[85]

{Նա, ով հավատք է ընծայում Աստծուն և Վերջին Օրվան, (Դատաստանի Օրվան) պետք է բարիք գործի իր հարևանին: }[86]

{ Աստված ձեզ չի դատում ըստ արտաքինի կամ ունեցվածքի, այլ Նա դիտում է ձեր սրտերը և ձեր արարքները:}[87]

{Վճարիր աշխատողին նրա վարձը մինչ նրա քրտինքը կչորանա: }[88]

{Արահետով անցնող մի մարդ ծարավ զգաց: Հասնելով ջրհորի մոտ նա իջավ այնտեղ, հագուրդ տվեց իր ծարավին և դուրս եկավ: Այնուհետ նա մի շուն տեսավ, որը ծարավից դուրս էր հանել իր լեզուն, փորձելով լիզել հողը ծարավը հագուրդ տալու համար: Տղամարդն ասաց. «Այս շունը զգում է նույն ծարավը, որը ես էի զգում»: Այսպիսով նա կրկին իջավ ջրհորը, ջուր լցրեց իր կոշիկի մեջ և տվեց շանը ըմպելու: Այսպիսով Աստված երախտապարտ եղավ նրան և ներեց իր մեղքերը:} Մարգարեին (Խ.Ա.Ո.Ն) հարցրեցին. «Աստծո Մարգարե, արդյո՞ք

[80] Հաղորդել է Սահիհ Մուսլիմ համար 2586 և Սահիհ Ալ Բուխարի համար 6011
[81] Հաղորդել է Մուսնադ Ահմեդ համար 7354 և Ալ-Թիրմիզի համար 1162
[82] Հաղորդել է Սահիհ Ալ-Բուխարի համար 13 և Սահիհ Մուսլիմ համար 45
[83] Հաղորդել է Ալ-Թիմիզին համար 1924 և Աբու Դաուդ համար 4941
[84] Հաղորդել է Ալ-Թիմիզի համար 1956
[85] Հաղորդել է Սահիհ Մուսլիմ համար 1009 և Սահիհ Ալ-Բուխարի համար 2989
[86] Հաղորդել է Սահիհ Մուսլիմ համար 48 և Սահիհ Ալ-Բուխարի համար 6019
[87] Հաղորդել է Սահիհ Մուսլիմ համար 2564
[88] Հաղորդել է Իբն Մաջահը համար 2443

**մեզ պարգևատրում են կենդանիների նկատմամբ բարության համար»: Նա ասաց. {Գոյություն ունի պարգև ի պատասխան յուրաքանչյուր կենդանի արարածի կամ մարդու նկատմամբ բարության:}**[89]

# Ի՞նչ է ասում ղուրանը դատաստանի օրվա մասին

Ինչպես Քրիստոնյաները,Մահմեդականները հավատք են ընծայում, որ ներկայիս կյանքը միայն հաջորդ գոյության նախապատրաստության փորձ է: Այս կյանքը փորձություն է հանդիսանում յուրաքանչյուր անհատի մահվանը հաջորդող կյանքին:Կգա մեկ օր,երբ ամբողջ տիեզերքը կկործանվի և հանգուցյալները հարություն կառնեն Աստծո դատաստանի համար: Այս օրը կլինի նոր կյանքի սկիզբը, որը երբեք չի ավարտվի: Այդ օրը Դատաստանի Օրն է: Այդ օրը բոլոր մարդիկ Աստծուց կստանան պարգև ըստ իրենց հավատքի և արարքների:Նրանք,ովքեր կնքում են մահկանացուն հավատք ընծայելով,որ «**Գոյություն չունի ոչ մի ճշմարիտ աստված բացառությամբ Աստծո և Մուհամմեդը Աստծո Մարգարեն է**» և գոյություն ունեն մահմեդականներ,ովքեր կստանան պարգև այդ օրը և հավերժ Դրախտ կմտնեն, ինչպես Աստված ասում է.

**«Եվ նրանք, ովքեր հավատք են ընծայում և բարի արարքներ են գործում, հանդիսանում են Դրախտի բնակիչներ, նրանք այնտեղ հավերժ բնակություն կհաստատեն»: (Ղուրան 2:82)**

Սակայն նրանք, ովքեր մահկանացու կնքել են հավատք չընծայելով, որ «**Գոյություն չունի ոչ մի ճշմարիտ աստված, բացի Աստծուց և Մուհամմեդը Աստծո Մարգարեն է**» կամ մահմեդականներ չեն, հավերժ կկորցնեն Դրախտը և կգնան Դժոխք, ինչպես ասել է Աստված.

**«Եվ, ով փնտրում է այլ կրոն Իսլամից բացի, նրանից չի ընդունվի և նա կլինի Հանդերձյալ կյանքի պարտվողներից մեկը»: (Ղուրան 3:85)**

Եվ ինչպես նա ասաց.

**«Նրանք, ովքեր հավատք չեն ընծայել և անհավատության մեջ կնքել են մահկանացուն, երկրի չափով լի ոսկին չի ընդունվի նրանցից որևէ մեկից, եթե դա առաջարկեին որպես փրկագին: Նրանք կունենան տանջալի պատիժ և նրանք չեն ունենա ոչ մի օգնականներ»: (Ղուրան 3:91)**

Կարող եք հարցնել *«Ես կարծում եմ, որ Իսլամը լավ կրոն է, սակայն, եթե ես ընդունեմ այն, իմ ընտանիքը, ընկերները և այլ մարդիկ*

[89] Հաղորդել է Սահիհ Մուսլիմ համար 2244 և Սահիհ Ալ-Բուխարի համար 2466

*կդատապարտեն ինձ և ծաղրի կենթարկեն: Այսպիսով, եթե ես չընդունեմ Իսլամ, արդյո՞ք ես կմտնեմ Դրախտ և կփրկվեմ Դժոխքից»:*

Պատասխանը հանդիսանում է նախորդ տարբերակը. **«Եվ նա, ով փնտրում է Իսլամից բացի այլ կրոն, չի ընդունվի նրանից և նա կլինի Հանդերձյալ կյանքի պարտվողներից մեկը»: (Ղուրան 3:85)**

Այնուհետ Նա ուղարկեց Մարգարե Մուհամմեդին (Խ.Ա.Ո.Ն) մարդկանց կոչել առ Իսլամ: Բացի Իսլամից, Աստված չի ընդունում այլ կրոնի հավատարմությունը:Աստված մեր Արարիչը և Մատակարարն է: Նա արարել է երկրի վրա առկա ամենը: Մեզ մոտ առկա ամբողջ օրհնանքը և բարիքը Նրանից է: Այս ամենից հետո, երբ որևէ մեկը ժխտում է Աստծո, Նրա Մարգարե Մուհամմեդի (Խ.Ա.Ո.Ն) կամ Նրա կրոնի, Իսլամի հավատքը նշանակում է , հանդերձյալ կյանքում նա կկրի իր պատիժը: Իրականում մեր արարման հիմնական նպատակը հանդիսանում է երկրպագել միայն Աստծուն և հնազանդվել նրան, ինչպես Աստված ասել է Սուրբ Ղուրանի մեջ (51:56)

Այս կյանքը, որ մենք այսօր ապրում ենք ,շատ կարճ է: Դատաստանի Օրը անհավատները կկարծեն, որ երկրի վրա ապրած նրանց կյանքը համապատասխանում է մեկ կամ մեկ ու կես օրվա, ինչպես Աստված ասում է.

**«Նա, (Աստված) կասի «Քանի՞ տարի դուք մնացիք երկրի վրա»: Նրանք կպատասխանեն. «Մենք մնացինք մեկ կամ մեկ ու կես օր...»»: (Ղուրան 23:112-113)**

Եվ Նա ասում է.

**«Արդյո՞ք դուք այնուհետ կարծում եք, որ Մենք արարել ենք ձեզ կատակով, (առանց որևէ նպատակի) և որ դուք չեք վերադառնա Մեզ մոտ (հանդերձյալ կյանքում): Այսպիսով, Աստված բարձրյալ է, Ճշմարիտ Արքա: Ոչ ոք իրավունք չունի երկրպագության բացառությամբ Նրա...»: (Ղուրան 23:115-116)**

Հանդերձյալ կյանքը իրական է:Այն ոչ միայն հոգևոր է, այլև ֆիզիկական: Մենք այնտեղ կբնակվենք մեր հոգով և մարմնով:Համեմատություն անց կացնելով այս և Հանդերձյալ կյանքի միջև, Մուհամմեդը (Խ.Ա.Ո.Ն) ասաց.

**«Այս աշխարհի արժեքը ի համեմատություն Հանդերձյալ աշխարհի նման է , այնի, ինչ ձեր մատն է բերում ծովից, երբ դուք այն մտցնում եք այնտեղ և հանում»:**[90]

Այսինքն, այս աշխարհի արժեքը ի համեմատություն Հանդերձյալ կյանքի նման է ջրի մի քանի կաթիլների և ծովի:

# Ի՞նչպես դառնալ մահմեդական

Ուղղակի անհրաժեշտ է ասել. «**Լե իլահա իլլա Ալլահ, Մուհամմեդուր ռասուլլու Ալլահ**» և անհատը ընդունում է Իսլամ և

[90] Հաղորդել է Սահիհ Մուսլիմ համար 2858 և Մուսնադ Ահմեդ համար 17560

դառնում է Մահմեդական: Այս արտահայտությունը նշանակում է. «**Գոյություն չունի ոչ մի ճշմարիտ աստված, բացառությամբ Աստծո** (**Ալլահի**)[91] **և Մուհամմեդը Աստծո Մարգարեն է**»:

Առաջին հատվածը, «**Գոյություն չունի ոչ մի ճշմարիտ աստված, բացառությամբ Աստծո**» նշանակում է, որ ոչ ոք չունի երկրպագության իրավունք , բացառությամբ միայն Աստծո և որ Աստված չունի ոչ գործընկեր ոչ էլ որդի: Մահմեդական լինելու համար անհատը նույնպես պետք է.

- Հավատք ընծայի, որ Սուրբ Ղուրանը հանդիսանում է Աստծո գրական խոսքը , որը Նա հայտնել է:
- Հավատք ընծայի, որ Դատաստանի Օրը (Հարության Օրը) ճշմարիտ է և տեղի կունենա ինչպես Աստված խոսք է տվել Ղուրանի մեջ:
- Ընդունի Իսլամը որպես իր կրոն:
- Բացառությամբ Աստծո ոչինչ կամ ոչ ոքի չերկրպագի:

Մարգարե Մուհամմեդն (Խ.Ա.Ո.Ն) ասաց. «Աստված առավել ուրախ է որևէ մեկի ապաշխարությանը, երբ նա շրջվում է դեպի Նա ապաշխարությամբ, քան ձեզնից մեկը լինում է այն դեպքում, եթե հեծնում է իր ուղտը անապատում և այն փախչում է նրանից, տանելով սնունդը և ըմպելիքը, այնպես, որ նա կորցնում է վերադարձնելու հույսը: Նա մոտենում է ծառին և պառկում է ստվերի տակ սպասելով մահվան, քանի որ նա կորցրել է ամբողջ հույսը գտնելու ուղտը: Այնուհետ, մինչ նա հուսահատության մեջ է, հանկարծակի այն նրա առջև է: Այսպիսով, նա վերցնում է սանձը և ուրախության պոռթկումով բղավում է. «Օվ Աստված Դու իմ ծառան ես և ես Քո տերն եմ»: Նրա սխալը բխում է չափից դուրս ուրախությունից »:[92]



[91] Ինչպես նշվել է էջ, 47-ի մեջ, արաբերեն Ալլահ բառը նշանակում է Աստված, մեկը և միակ ճշմարիտ Աստվածը, ով արարել է ամբողջ տիեզերքը: Ալլահ բառը հանդիսանում է Աստծո անունը, որը կիրառում են և արաբ մահմեդականները և արաբ քրիստոնյաները: Ալլահ բառի հետ կապված մանրամասները դիտեք էջ.47 հաջորդող հատվածում:

[92] Հաղորդել է Սահիհ Մուսլիմ համար 2747 և Սահիհ Ալ-Բուխարի համար 6309

Արտահայտությունը «Գոյություն չունի ոչ մի ճշմարիտ աստված, բացառությամբ Աստծո և Մուհամմեդը Աստծո Մարգարեն է», փոռագրված է մուտքի մոտ:

# Ինչի՞ մասին է ղուրանը

Ղուրանը հանդիսանում է յուրաքանչյուր մահմեդականի հավատքի և գործունեության Աստծո վերջին հայտնված խոսքը և հիմնական աղբյուրը: Այն զբաղվում է մարդ արարածի բոլոր բնույթներով. Իմաստությամբ, ուսմունքով, երկրպագությամբ, արձանագրություններով, օրենքով և այլն, սակայն նրա հիմնական թեման հանդիսանում է Աստծո և Իր արարածների փոխհարաբերությունները:



Միևնույն ժամանակ, այն ուղեցույց և մանրակրկիտ ուսմունքներ է ներկայացնում արդար հասարակության, պատշաճ մարդկային վարքագծի և արդար տնտեսական համակարգի համար:

Նկատի ունեցեք, որ Ղուրանը հայտնվել է Մուհամմեդին (Խ.Ա.Ո.Ն) միայն արաբերեն լեզվով: Այսպիսով, ցանկացած Ղուրանական թարգմանություն, լինի անգլերեն կամ այլ լեզվով չի հանդիսանում Ղուրան, ոչ էլ Ղուրանի տարբերակը, այլ ուղղակի Ղուրանի իմաստային թարգմանությունը: Ղուրանը գոյություն ունի միայն արաբերեն լեզվով, որը որ հայտնվել է:

# Ո՞վ է մարգարե մուհամմեդը (Խ.Ա.Ո.Ն)

Մուհամմեդը (Խ.Ա.Ո.Ն) ծնվել է Մեքքայում 570 թվականին: Քանի որ նրա հայրը մահկանացուն էր կնքել մինչ իր ծնունդը և մայրը ծննդից կարճ ժամանակ անց, նրան դաստիարակել է իր հորեղբայրը, ով հանդիսանում էր հարգարժան Քուրեյշ ցեղից: Նա մեծացել էր անուսում, ով ի վիճակի չէր կարդալ և գրել և այդպես էլ մնաց մինչ իր մահը: Նրա ժողովուրդը մինչ իր մարգարեական առաքելությունը, անտեղյակ էին գիտությունից և նրանց մեծամասնությունը անուսում էին: Մեծանալուն պես նա հայտնի դարձավ որպես ճշմարիտ, ազնիվ, արդար, առաքինի և անկեղծ մարդ: Նա այնքան վստահելի էր, որ նրան անվանեցին Վստահելի:[93] Մուհամմեդը (Խ.Ա.Ո.Ն) շատ կրոնական էր և նողկանք էր զգում իր հասարակության կռապաշտությունից և անկումից:

---

[93] Հաղորդել է Մուսնադ Ահմեդ համար 15078

Քառասուն տարեկան հասակում, Մուհամմեդը (Խ.Ա.Ո.Ն) Աստծուց ստացավ իր առաջին հայտնությունը Գաբրիել Հրեշտակի կողմից: Հայտնությունը շարունակվեց քսաներեք տարի և հավաքական կերպով հայտնի է որպես Ղուրան:



Մարգարե Մուհամմեդի Խ.Ա.Ո.Ն Մզկիթը Մեդինայում:

Այն պահից, երբ նա սկսեց ընթերցել Ղուրանը և քարոզել ճշմարտությունը, որը Աստված էր հայտնել նրան, նա և նրա հետևորդների փոքր խումբը տառապեց անհավատների հետապնդումներից: Հետապնդումները այնքան կատաղի էր, որ 622 թվականին Աստված նրանց պատվիրեց արտագաղթել: Մեքքայից մոտ 260 կմ դեպի հյուսիս Մեդինա այդ արտագաղթը, նշում է Մահմեդական օրացույցի սկիզբը:

Մի քանի տարի անց,Մուհամմեդը (Խ.Ա.Ո.Ն) և նրա հետևորդները ի վիճակի էին վերադառնալ Մեքքա, որտեղ նրանք ներեցին իրենց թշնամիներին: Մինչ Մուհամմեդի (Խ.Ա.Ո.Ն) մահը, վաթսուն երեք տարեկան հասակը, Արաբական Թերակղզու մեծամասնությունը մահմեդականներ էին և իր մահից մեկ դար անց, Իսլամը տարածում գտավ Իսպանիայում, Արևմուտքում և Արևելքում, Չինաստանում: Իսլամի արագ և խաղաղ տարածման պատճառներից մեկը հանդիսանում էր ուսմունքի ճշմարտացիությունը և պարզությունը: Իսլամը կոչ է անում միայն մեկ Աստծո հավատքի, Ով միակն է արժանի երկրպագության:

Մարգարե Մուհամմեդը (Խ.Ա.Ո.Ն) հանդիսանում էր ազնվության, արդարության, գթասրտության, ճշմարտացիության, կարեկցանքի և քաջ մարդու կատարյալ օրինակ: Չնայած նա մարդ էր, նա հեռու էր ամեն չար բնորոշումից և ձգտում էր բացառապես հանուն Աստծո և Հանդերձյալ կյանքի Նրա պարգևի:Ավելին, իր բոլոր արարքներով և գործողություններով նա հիշատակող և աստվածավախ էր:

(Խնդրում ենք այցելել www.islam-guide.com/ muhammad Մարգարե Մուհամմեդի (Խ.Ա.Ո.Ն) մասին լրացուցիչ տեղեկությունների համար):

# Ո՞րն է իսլամի ազդեցությունը գիտական զարգացմանը

Իսլամը հրահանգում է մարդուն կիրառել իր հետազոտական և դիտողական ունակությունը: Իսլամի տարածումից մի քանի տարի անց մեծ քաղաքակրթությունները և համալսարանները ծաղկունք են ապրում: Արևմտյան և արևելյան գաղափարների, նոր և հին մտքերի սինթեզը մեծ առաջընթաց են բերել բժշկության, հանրահաշվի, ֆիզիկայի, աստղագիտության, աշխարհագրության, ճարտարապետության, արվեստի գրականության և պատմության բնագավառներում:



Աստղադիտակ. Գիտական ամենակարևոր գործիքներից մեկը, որը զարգացրել են մահմեդականները, որը կիրառել են Արևմուտքում ընդհուպ մեր օրերը:

Շատ վճռական համակարգեր, ինչպիսիք են հանրահաշիվը, արաբական թվերը և զրոյի գաղափարը կարևոր առաջընթացի հանրահաշվի փոխանցվել են միջնադարյան Եվրոպա մահմեդական աշխարհից:



Մահմեդական բժիշկները մեծ ուշադրություն են դարձրել վիրաբուժությանը և կատարելագործել են շատ վիրաբուժական գործիքներ, ինչպես դուք տեսնում եք հին ձեռագրի մեջ:

Բարդ գործիքները, որոնք հնարավոր էին դարձնում Եվրոպական ճանապարհորդության բացահայտումը, ինչպիսիք են աստրոլյաբիան, լավ նավիգացիոն քարտեզները, նույնպես զարգացրել են Մահմեդականները:

# Ո՞րն է մահմեդականների հավատքը հիսուսին

Մահմեդականները հարգում և մեծարում են Հիսուսին (Խ.Ա.Ո.Ն): Նրանք նրան համարում են Աստծո ամենամեծ մարգարեներից մեկը մարդկությանը:Ղուրանը հաստատում է նրա կուսական ծնունդը և Ղուրանի մեկ գլուխը կոչվում է «Մարիամ»: Ղուրանը նկարագրում է Հիսուսի ծնունդը հետևյալ կերպ.

**«Հիշեք երբ հրեշտակները ասացին. «Օվ Մարիամ, Աստված քեզ տալիս է ավետիս խոսքի Նրանից (Աստծուց), ում անունն է Մեսսիա, Հիսուս, Մարիամի որդի, մեծարված այս աշխարհում և Հանդերձյալ և մեկը, ով մոտ է Աստծուն: Նա կխոսի մարդկանց հետ իր օրորոցից և որպես մարդ նա արդարներից մեկն է»: Նա ասաց. «Իմ Տեր, ինչպե՞ս եմ ես կարող ունենալ զավակ, երբ ոչ մի մահկանացու չի դիպչել ինձ»: Նա ասաց. «Այսպիսով, այդ կլինի: Աստված արարում է այն, ինչ Նա ցանկանում է: Եթե Նա որոշի մի բան, Նա միայն ասում է «Եղիր» և այն լինում է»»: (Ղուրան 3:45-47)**

Հիսուսը ծնվել է հրաշքով,Աստծո հրամանով, ով Ադամին առանց հոր բերել էր գոյության: Աստված ասում է.

**«Հիսուսի դեպքը Աստծո հետ, նման է Ադամի դեպքին: Նա արարել է նրան հողից և այնուհետև Նա ասել է նրան «եղիր» և նա եկել է գոյության»: (Ղուրան 3:59)**

Իր մարգարեական առաքելության ընթացքում Հիսուսը շատ հրաշքներ ներկայացրեց: Աստված մեզ ասում է, որ Հիսուսն ասաց.

**«Ես եկել եմ ձեզ մոտ իմ Տիրոջ նշանով: Ես ձեզ համար պատրաստել եմ թռչնի կերպար կավից, ես փչել եմ և այն դարձել է թռչուն Աստծո թույլտվությամբ: Ես բուժում եմ բնածին կույրին և բորոտին:Եվ, ես հարություն եմ տալիս հանգուցյալին Աստծո թույլտվությամբ: Եվ ես ասում եմ ձեզ, թե դուք ինչով եք սնվում և ինչ եք պահում ձեր տների մեջ…» (Ղուրան 3:49)**

Մահմեդականները հավատք են ընծայում, որ Հիսուսը չի խաչվել: Հիսուսի թշնամիները ծրագրել էին խաչել նրան, սակայն Աստված փրկեց նրան և համբարձեց Իր մոտ: Եվ Հիսուսի նմանությամբ մեկ այլ մարդու էին դրել: Հիսուսի թշնամիները վերցրել են այս մարդուն և խաչել, կարծելով որ Հիսուսն է: Աստված ասում է.

**«…Նրանք ասացին. «Մենք սպանեցինք Մեսսիա Հիսուսին, Մարիամի որդուն, Աստծո մարգարեին»: Նրանք չեն սպանել նրան, ոչ էլ խաչել են նրան, սակայն նրա նմանությամբ մեկ այլ մարդ կար և նրանք սպանեցին այդ մարդուն…»: (Ղուրան 4:157)**

Ոչ Մուհամմեդը (Խ.Ա.Ո.Ն) ոչ էլ Հիսուսը չէին եկել փոփոխելու մեկ Աստծո հավատքի հիմնական ուսմունքը, որը բերել էին նախորդ մարգարեները, հակառակը, նրանք եկել էին հաստատելու և նորացնելու այն:[94]

( Հիսուսի մասին լրացուցիչ տեղեկությունների համար խնդրում ենք այցելել www.islam-guide.com/jesus)

---

[94] Մահմեդականները նույնպես հավատք են ընծայում, որ Աստված հայտնել է սուրբ գիրքը Հիսուսին,որը կոչել են Ինջիլ, որի որոշ հատվածները ,մինչ այժմ մատչելի են:Աստծո ուսմունքի, որը վերաբերում է Նոր Կտակարանին և Հիսուսին: Սակայն այս չի նշանակում, որ մահմեդականները հավատք են ընծայում այսօր առկա Աստվածաշնչին, քանի որ այն չի հանդիսանում Աստծո հայտնած բնօրինակ ձեռագիրը: նրանք անցել են լրացումներ, աղավաղում և հեռացում: Այս կրկնել են նաև Սուրբ Աստվածաշնչի վերանայող կոմիտեն: Այն բաղկացած էր երեսուն երկու գիտնականներից, ովքեր ծառայում էին որպես Կոմիտեի անդամներ: Նրանք ապահովում են վարանայումը և խորհուրդը Խորհրդատու խորհրդի, որը բաղկացած էր համագործակցող հիսուն ներկայացուցիչներից: Սուրբ Աստվածաշնչի նախաբանի մեջ Կոմիտեն ասաց.«Երբեմն ակնհայտ է, որ տեքստը ենթարկվել է փոփոխություն, սակայն տարբերակներից ոչ մեկը չի ներկայացնում սպառիչ վերանայում: Այստեղ,մենք կարող ենք միայն հետևել հակամարտող գիտնականների լավագույն դատաստանին, որպես բնօրինակ տեքստի ամենահնարավոր վերանայում»: Նախաբանի մեջ Կոմիտեն նույնպես ասաց." Ավելացվել են նշումներ, որոնք մատնանշում են կարևոր տարբերակները, լրացումները կամ հեռացումները հնագույն հեղինակություններից: Մատթեոս. 9,34 ՄԿ 3.16;7.4, Ղուկաս 24.32 , 51 և այլն:" Լրացուցիչ տեղեկությունների համար խնդրում են այցելել www. Islam-guide.com/bible.



Երուսաղեմի Աքսա Մազկիթը

# Ի՞նչ է ասում իսլամը ահաբեկչության մասին

Իսլամը հանդիսանում է գթասրտության կրոն, որը չի թույլատրում ահաբեկչություն: Ղուրանի մեջ Աստված ասում է.

**«Աստված չի արգելել ձեզ ցուցաբերել բարություն և արդար վերաբերմունք նրանց, ովքեր չեն պայքարում ձեր կրոնի դեմ և չեն վտարում ձեզ ձեր տներից: Աստված սիրում է արդարներին»: (Ղուրան 60:8)**

Մարգարե Մուհամմեդը (Խ.Ա.Ո.Ն) սովորություն ուներ արգելել զինվորներին սպանել կանանց և երեխաներին[95] և խորհուրդ էր տալիս նրանց.

**«... Մի դավաճանեք, մի վարվեք չափազանց, մի սպանեք նորածիններին»:**[96]

Եվ նա նույնպես ասաց.

**«Նա, ով սպանում է որևէ մեկին, ով համաձայնագիր ունի մահմեդականների հետ, չի առնի Դրախտի բույրը, չնայած բույրը կարելի է զգալ քառասուն տարի տարածության վրա»:**[97]

Նույնպես Մարգարե Մուհամմեդը (Խ.Ա.Ո.Ն) արգելել է պատժել կրակի միջոցով:[98]

Մեկ անգամ նա նույնիսկ նշեց դա, որպես երկրորդ մեծ մեղք[99] և զգուշացրեց դրա մասին Դատաստանի Օրը:

**«Առաջին դեպքերը, որոնք պետք է դատվի մարդկանց միջև Դատաստանի Օրը, կլինի արյունահեղությունը»:**[100] [101]

---

[95] Հաղորդեց Սահիհ Մուսլիմ համար 1744 և Սահիհ Ալ-Բուխարի համար 3015
[96] Հաղորդեց Սահիհ Մուսլիմ համար 1731 և Ալ-Թիրմիզի համար 1408
[97] Հաղորդել է Սահիհ Ալ-Բուխարի համար 3166 և Իբն Մաջահ համար 2686
[98] Հաղորդել է Աբու Դաուդ համար 2675
[99] Հաղորդել է Սահիհ Ալ-Բուխարի համար 6871 և Սահիհ Մուսլիմ համար 88
[100] Սա նշանակում է սպանություն և վնաս:
[101] Հաղորդել է Սահիհ Մուսլիմ համար 1678 և Սահիհ Ալ-Բուխարի համար 6533

Մահմեդականներին նույնիսկ խրախուսում են բարի վերաբերմունք ցուցաբերել կենդանիներին և արգելում են վնասել նրանց: Մեկ անգամ Մարգարե Մուհամմեդը (Խ.Ա.Ո.Ն) ասաց.

**«Մի կնոջ պատժեցին, որովհետև նա փակի տակ էր պահել կատվին, մինչ այն սատկել էր: Որպես հաշիվ նա ընկել է Դժոխք: Մինչ նա փակի տակ էր պահել կատվին, նա նրան չի տվել սնունդ և ըմպելիք, ոչ էլ ազատ էր թողել սնվելու երկրի միջատներից»:**[102]

Նա նույնպես ասաց, որ մի մարդ հագուրդ տվեց շան ծարավը, այսպիսով այս արարքի համար Աստված ներեց նրա մեղքերը: Մարգարեին (Խ.Ա.Ո.Ն) հարցրեցին.

**«Աստծո Մարգարե, արդյո՞ք մենք պարգև ենք ստանում կենդանիների նկատմամբ բարության համար»:**

Նա ասաց. **«Պարգևը գոյություն ունի յուրաքանչյուր կենդանու կամ մարդու նկատմամբ բարության համար»:**[103]

Ի լրացում պետք է ասել, որ սննդի նպատակով կենդանիների մորթի ժամանակ մահմեդականներին պատվիրել են այնպես անել, որ այն նվազագույն տանջանք և վախ պատճառի:Մարգարե Մուհամմեդը (Խ.Ա.Ո.Ն) ասաց.

**«Երբ դուք կենդանի եք մորթում, արեք դա լավագույնս: Պետք է սրել դանակը, որպեսզի նվազեցնել կենդանու տառապանքը»:**[104]

Հաշվի առնելով սա և Իսլամական այլ տեքստերը անպաշտպան քաղաքացիների սրտերը ահաբեկչության հրահրման գործողությունները, ունեցվածքի և կառույցների կործանումը, ռմբակոծությունը և անմեղ տղամարդկանց, կանանց և երեխաների խեղումը ամբողջովին արգելված է և ըստ Իսլամի և մահմեդականների համարվում են գարշելի արարքներ: Մահմեդականները հետևում են խաղաղության, գթասրտության, թողության կրոնին և մեծամասնությունը ոչ մի կապ չունեն բռնի իրադարձությունների հետ, որոնք ոմանք կապում են մահմեդականների հետ: Եթե անհատ մահմեդականը իրականացնում է ահաբեկչական գործողություն, ապա նա մեղավոր է ճանաչվում Իսլամի օրենքները ոտնահարելու մեջ:

# Մարդու իրավունքները և արդարությունը իսլամի մեջ

[102] Հաղորդեց Սահիհ Մուսլիմ համար 2422 և Սահիհ Ալ-Բուխարի համար 2365

[103] Մուհամմեդի (Խ.Ա.Ո.Ն) այս խոսքերը ավելի մանրակրկիտ նշվել է էջ 50: Հաղորդել է Սահիհ Մուսլիմ համար 2244 և Սահիհ Ալ-Բուխարին համար 2466

[104] Հաղորդել է Սահիհ Մուսլիմ համար 1955 և Ալ-Թիրմիզի համար 1409

Իսլամը ապահովում է անհատի շատ իրավունքները: Հետևյալ օրինակները հանդիսանում են մարդու մի քանի իրավունքներ, որոնք գտնվում են Իսլամի պաշտպանության ներքո:

Իսլամական պետության բոլոր քաղաքացիների կյանքը, ունեցվածքը սուրբ են, անկախ անհատի կրոնական պատկանելության: Իսլամը նույնպես պաշտպանում է պատիվը:Այսպիսով, Իսլամի մեջ թույլատրելի չէ վիրավորել կամ ծաղրել մյուսներին: Մարգարե Մուհամմեդը (Խ.Ա.Ո.Ն) ասաց.

**«Ճշմարիտ, ձեր արյունը, ունեցվածքը և ձեր պատիվը անձեռնմխելի են»:**[105]

Իսլամը արգելում է նաև ռասսայականությունը, քանի որ Ղուրանը խոսում է մարդկանց հավասարության մասին.

**«Ով Մարդկություն, Մենք արարել ենք ձեզ արական և իգական սեռից և դարձրել ենք ձեզ ազգեր և ցեղեր, որպեսզի դուք ճանաչեք միմյանց: Իրոք, ազնվագույնը ձեզանից Աստծո հետ հանդիսանում է ամենաբարեպաշտը:[106] Իրոք, Աստված Ամենատեղյակ, Ամենագիտակն է»: (Ղուրան 49:13)**

Իսլամը ժխտում է որոշ անհատների կամ ազգերի գերիշխանությունը, ի շնորհիվ իրենց ունեցվածքի, իշխանության և ռասսայի:Աստված մարդ արարածներին արարել է հավասար, ովքեր միմյանցից տարբերվում են միայն ի շնորհիվ իրենց հավատքի և բարեպաշտության:Մարգարե Մուհամմեդը (Խ.Ա.Ո.Ն) ասաց.

**«Ով մարդիկ: Ձեր Աստվածը մեկն է և ձեր նախահայրը, Ադամը, մեկն է:Արաբը ավելի լավը չէ, քան ոչ արաբը և ոչ արաբը ավելի լավը չէ, քան արաբը, և կարմիրը (խառնուրդը) ավելի լավը չէ քան սևամորթը և սևամորթը ավելի լավը չէ, քան կարմրամորթը[107] բացառությամբ բարեպաշտության»:**[108]

Ամենամեծ խնդիրներից մեկը,որի առջև կանգնած է ժամանակակից հասարակությունը հանդիսանում է ռասսայականությունը:Առաջադեմ աշխարհը կարող է մարդ ուղարկել լուսին, սակայն չի կարող կանգնեցնել մարդուն ատելը և այլ մեկի հետ մարտնչելը:Մարգարե Մուհամմեդի (Խ.Ա.Ո.Ն) օրերից ի վեր, Իսլամը վառ օրինակ է ներկայացրել, թե ինչպես կանգնեցնել ռասսայականությունը: Տարեկան ուխտագնացությունը (Հաջ) Մեքքա, ցույց է տալիս տարբեր ռասսաների և ազգերի իրական Իսլամական եղբայրությունը, երբ ամբողջ աշխարհից մոտ երկու միլիոն մահմեդական գալիս են ուխտագնացության Մեքքա:

Իսլամը հանդիսանում է արդարության կրոն: Աստված ասում է.

---

[105] Հաղորդեց Սահիհ Ալ-Բուխարի համար 1739 և Մուսնադ Ահմեդ համար 2037

[106]Բարեպաշտ է այն հավատացյալը, ով զերծ է մնում ամեն տեսակի մեղքերից, ներկայացնում է բարի արարքներ, որոնք պատվիրում է Աստվածը և վախենում և սիրում է Աստծուն:

[107] Նշված գույները ուղղակի օրինակներ են: Իմաստը այն է, որ ըստ Իսլամի ոչ ոք մյուսից լավը չէ ի շնորհիվ իր գույնի, լինի սպիտակ, սև , կարմիր կամ այլ գույն:

[108] Հաղորդել է Մուսնադ Ահմեդ համար 22978

**«Ճշմարիտ, Աստված պատվիրել է ձեզ վերադարձնել վստահությունը նրանց, ովքեր արժանի են և երբ դուք դատում եք մարդկանց, դատեք արդարությամբ...»: (Ղուրան 4:58)**

Եվ Նա ասում է.

**«... Եվ գործեք արդար: Ճշմարիտ Աստված սիրում է նրանց, ովքեր արդար են»: (Ղուրան 49:9)**

Մենք պետք է արդար լինենք նույնիսկ նրանց նկատմամբ, ովքեր ատում են մեզ, ինչպես Աստված ասել է.

**«... Եվ թող այլոց ատելությունը թույլ չտա ձեզ խուսափել արդարությունից: Եղեք արդար. Այն մոտ է բարեպաշտությանը...» (Ղուրան 5:8)**

Մարգարե Մուհամմեդը (Խ.Ա.Ո.Ն) ասաց.

**«Մարդիկ, զգուշացեք անարդարությունից**[109]**, քանի որ անարդարությունը խավար կլինի Դատաստանի Օրը»:**[110]

Եվ նրանք , ովքեր չեն ստացել իրենց իրավունքները, (այսինքն ինչ նրանց արդարորեն խոսք են տվել այս կյանքում), կստանան Դատաստանի Օրը, ինչպես ասել է Մարգարեն (Խ.Ա.Ո.Ն) **«Դատաստանի Օրը իրավունքները կտրվեն նրանց, ում պարտք են (և սխալները կշտկվեն)...»:**[111]

# Ո՞րն է կնոջ դիրքը ըստ իսլամի



Լինի ամուրի կամ ամուսնացած, Իսլամը կնոջը դիտում է որպես անհատ իր իրավունքով, ունեցվածք ունենալու և տնօրինելու և առանց խնամակալության վաստակելու իրավունքով, լինի հայր, ամուսին, կամ որևէ այլ մեկը: Նա ունի իրավունք գնելու և վաճառելու, նվերներ և բարեգործություն տալու և ըստ իր հայեցողության գումար ծախսելու: Ամուսնական օժիտը հանդիսանում է նրա իսկ անձնական կիրառությունը և նա պահպանում է իր ազգանունը:

Իսլամը ամուսնուն խրախուսում է կնոջը լավ վերաբերվել, ինչպես ասել է Մարգարե Մուհամմեդը (Խ.Ա.Ո.Ն) **«Լավագույնը ձեզանից հանդիսանում են նրանք, ովքեր լավագույնն են իրենց կանանց նկատմամբ»:**[112]

---

[109]Այսինքն, այլ մարդկանց ճնշելուց, անարդար վերաբերվելուց, նրանց նկատմամբ սխալվելուց

[110] Հաղորդել է Մուսնադ Ահմեդ համար 5798 և Սահիհ Ալ-Բուխարի համար 2447

[111] Հաղորդել է Սահիհ Մուսլիմ համար 2582 և Մուսնադ Ահմեդ համար 7163

[112] Հաղորդել է Իբն Մաջահ համար 1978 և Ալ-Թիրմիզի համար 3895

Իսլամը պատվում է մայրերին:Իսլամը խորհուրդ է տալիս նրանց լավագույնս վերաբերվել:Մի տղամարդ եկավ Մարգարե Մուհամմեդի (Խ.Ա.Ո.Ն) մոտ և ասաց.

**«Օվ Աստծո Մարգարե, Ո՞վ է մարդկանցից առավել արժանավոր իմ ընկերակցությանը»: Մարգարեն (Խ.Ա.Ո.Ն) ասաց. «Քո մայրը»: Տղամարդը հարցրեց. «Այնուհետ, ով»: Մարգարեն (Խ.Ա.Ո.Ն) ասաց. «Քո մայրը»: Տղամարդը կրկին հարցրեց. «Այնուհետ, ով»: Մարգարեն (Խ.Ա.Ո.Ն) ասաց. «Քո մայրը»: Տղամարդը կրկին հարցրեց. «Այնուհետ, ով»: Մարգարեն (Խ.Ա.Ո.Ն) ասաց. «Այնուհետ քո հայրը»:**[113]

(Խնդրում ենք այցելել www.islam-guide.com/women լրացուցիչ տեղեկությունների համար):

# Ընտանիքը ըստ իսլամի

Ընտանիքը, որը հանդիսանում է քաղաքակրթության հիմնական միավորը այժմ մասնատվում է: Իսլամական ընտանեկան համակարգը ամուսնու, կնոջ, երեխաների և ազգականների իրավունքները բերում է նուրբ հավասարակշռության: Այն սնուցում է անշահախնդիր վարքագիծը, առաքինությունը և սերը լավ կազմակերպված ընտանեկան համակարգի շրջանակներում: Խաղաղությունը և ապահովությունը, որը առաջարկում է հաստատուն ընտանեկան միավորը մեծ արժեք ունի և այն էական է դիտվում, անդամների հոգևոր աճի համար: Ի շնորհիվ առկա ընդլայնված ընտանիքների և զավակների ստեղծվում է ներդաշնակ հասարակական կարգ:

# Ինչպե՞ս են մահմեդականները վերաբերվում տարեցներին

Իսլամական աշխարհում հազվագյուտ կարելի է «ծերանոցներ» գտնել: Ծնողների հոգածության կնիքը նրանց կյանքի այս ամենադժվար պահերին, համարվում է պատիվ և օրհնանք և հոգևոր մեծ աճի հնարավորություն: Իսլամի մեջ, բավարար չէ, միայն աղոթել մեր ծնողների համար, սակայն, մենք պետք է գործենք անսահման կարեկցությամբ, հիշելով, որ երբ մենք անօգնական երեխաներ էինք, նրանք մեզ գերադասում էին իրենցից: Մայրերը առավել պատվելի են: Երբ մահմեդական ծնողները հասնում են պատկառելի տարիքի, նրանց վերաբերվում են գթասրտությամբ, բարությամբ և անձնվիրությամբ:

Իսլամի մեջ ծնողներին ծառայելը հանդիսանում է աղոթքից հետո երկրորդ պարտականությունը և նրանց իրավունքն է սպասել դա:

[113] Հաղորդեց Սահիհ Մուսլիմ համար 2548 և Սահիհ Ալ-Բուխարի համար 5971

Արիամարիեի է համարվում արտահայտել որևէ գրգռվածություն, երբ անկախ իրենց կամքի, տարեց լինելը դժվար է:

Աստված ասում է.

**«Ձեր Տերը պատվիրել է, որ դուք չերկրպագեք որևէ մեկին, բացառությամբ Նրա և որ դուք բարի լինեք ձեր ծնողների նկատմամբ: Եթե նրանցից մեկը կամ երկուսը հասնում են պատկառելի տարիքի ձեր հետ, նրանց մի ասեք որևէ անհարգալից խոսք, կամ հանդիմենեք նրանց, այլ ասեք առաքինի խոսք նրանց: Եվ գործեք հնազանդությամբ նրանց հետ, գթասրտորեն և ասեք. «Իմ Տեր, գթա նրանց, քանի որ նրանք հոգ են տարել ինձ, երբ ես փոքր էի»»: (Ղուրան 17:23-24)**

# Ո՞րոնք են իսլամի հինգ սյուները

Իսլամի հինգ սյուները հանդիսանում են մահմեդականի կյանքի շրջանակը: Դրանք են հավատքի վկայությունը, աղոթքը, զաքյաթը, (բարեգործությունը), Ռամադան ամսվա պահքը և ուխտագնացությունը Մեքքա, կյանքի ընթացքում մեկ անգամ, եթե հնարավոր է:

### (1) Հավատքի վկայությունը

Հավատքի վկայությունը համոզվածությամբ ասում է. «**Լե իլահա իլլա Ալլահ, Մուհամմադուր ռասուլ Ալլահ**»: Սա թարգմանաբար նշանակում է «**Գոյություն չունի ոչ մի ճշմարիտ աստված, բացառությամբ Աստծո, (Ալլահի)** [114] **և Մուհամմեդը Աստծո Մարգարեն է**»: Առաջին հատվածը, «**Գոյություն չունի ոչ մի ճշմարիտ աստված, բացառությամբ Աստծո**» նշանակում է, որ ոչ ոք արժանի չէ երկրպագության, բացառությամբ միայն Աստծո և որ Աստված չունի ոչ գործընկեր, ոչ էլ որդի: Հավատքի այս վկայությունը կոչվում է Շահադա, (պարզ բանաձև), որը պետք է ասել համոզվածությամբ, որպեսզի ընդունել Իսլամը (բացատրությունը տրվել է էջ.52-23): Հավատքի վկայությունը հանդիսանում է Իսլամի ամենակարևոր սյունը:

### (2) Աղոթք

Մահմեդականները օրվա ընթացքում ներկայացնում են հինգ աղոթք: Յուրաքանչյուրը տևում է հինգ րոպեից էլ քիչ:Աղոթքը Իսլամի մեջ հանդիսանում է Աստծո և մարդու ուղղակի կապը: Նրանց միջև գոյություն չունի ոչ մի միջնորդ:

Աղոթքի ընթացքում անհատը ապրում է ներքին երջանկություն, խաղաղություն, և հարմարավետություն և այն, որ Աստված գոհ է նրանից; Մարգարե Մուհամմեդը (Խ.Ա.Ո.Ն) ասաց.

---

[114] Լրացուցիչ մանրամասների համար տեսեք էջ.47 ին հաջորդող վերջին հատվածը:

**«Բիլալը, մարդկանց աղոթքի կոչեց, եկեք հանգստություն ձեռք բերենք այդ միջոցով»:**[115]

Բիլալը Մուհամմեդի ուղեկցորդներից էր, ով պատասխանատու էր աղոթքի կոչին:

Աղոթքները տեղի են ունենում արշալույսին, կեսօրին, միջկեսօրին, մայրամուտին և գիշերը: Մահմեդականները կարող են աղոթել ամենուր, ինչպես դաշտերում, գործարաններում, համալսարաններում, գրասենյակներում:

(Լրացուցիչ տեղեկությունների համար խնդրում ենք այցելել www.islam-guide.com /prayer)[116]

### (3) Բարեգործություն, (Զաքյաթ)

Ամենը պատկանում է Աստծուն, ուստի մարդ արարածը ունեցվածքը պահպանում է ի շնորհիվ վստահության: Զաքյաթ բառի հիմնական իմաստը նշանակում է «մաքրում» և «աճ»: Զաքյաթ տալ նշանակում է «որոշակի ունեցվածքից որոշակի տոկոս տալ կարիքավորների որոշակի դասերին»: Տոկոսադրույքը կազմում է մեկ լուսնային տարվա ընթացքում պահպանված 85 գրամ ոսկու, արծաթի և գումարի չափը, որի տոկոսը կազմում է երկու և կես տոկոս: Մեր ունեցվածքը մաքրվում է, երբ մենք մի կողմ ենք դնում մի փոքր մաս կարիքավորների համար և ինչպես բույսերի էտը,սա պահպանում է հավասարակշռությունը և խրախուսում է նոր աճը:

Անհատը կարող է նաև ըստ ցանկության կամավոր օգնություն կամ բարեգործություն տալ:

### (4) Պահք Ռամադան ամսվա ընթացքում

Յուրաքանչյուր տարի Ռամադան[117] ամսվա ընթացքում մահմեդականները պահք են պահում արևածագից մինչ մայրամուտ, ձեռնպահ մնալով սննդից, ըմպելիքից և սեռական հարաբերություններից:

Չնայած պահքը օգտակար է առողջությանը,այն սկզբունքայնորեն համարվում է հոգևոր ինքնամաքրման մեթոդը:Ձեռնպահ մնալով աշխարհիկ հարմարություններից, նույնիսկ կարճ ժամանակով, անհատը իրական համակրանք է ձեռք բերում նրանց նկատմամբ, ովքեր քաղցած են , ինչպես նաև աճ է ապրում նրա հոգևոր կյանքը:

### (5) Ուխտագնացություն Մեքքա

Տարեկան ուխտագնացությունը (Հաջ) Մեքքա համարվում է պարտադիր գործողություն, որը պետք է ներկայացնեն կյանքի

---

[115] Հաղորդեց Աբու Դաուդ համար 4985 և Մուսնադ Ահմեդ համար 22578

[116] Կամ ուսումնասիրեք Իսլամի աղոթքի ուղեցույց Մ.Ա.Կ Սաքիբ: Կրկնօրինակի համար այցելեք վերոհիշյալ կայքը:

[117] Ռամադան ամիսը հանդիսանում է Իսլամական օրացույցի իններորդ ամիսը, որը լուսնային ամիս է:

ընթացքում մեկ անգամ նրանք, ովքեր ի վիճակի են ֆիզիկապես և նյութապես:

Ամեն տարի, երկրագնդի ամեն անկյունից, մոտ երկու միլիոն ուխտագնաց գնում են Մեքքա: Չնայած Մեքքան միշտ լի է այցելուներով, տարեկան Հաջ ներկայացնում են Իսլամական օրացույցի տասներկուերորդ ամսվա ընթացքում: Տղամարդ ուխտագնացները կրում են հատուկ պարզ հանդերձ, որը ջնջում է դասերի և մշակույթների յուրաքանչյուր տարբերությունը, այնպես, որ բոլորը հավասար կանգնում են Աստծո առջև:

Հաջի ծիսակատարությունները ներառում են Քաբբայի յոթ շրջայց և Սաֆա ու Մարվա բլուրների միջև քայլքը, ինչպես որ կատարել էլ Հաջարը ջրի փնտրտուքի ընթացքում: Այնուհետ ուխտագնացները միասին կանգնում են Արաֆաթի[118] վրա և Աստծոն ուղղում են իրենց խնդրանքները և Նրա թողությունը, որը կարծեցյալ համարվում է Դատաստանի օրվա նախադիտությունը:



Ուխտագնացները աղոթում են Մեքքայի (Հարամ) մզկիթում:Այստեղ է գտնվում Քաբբան, պատկերի սև կառույցը, որի ուղղությամբ աղոթում են մահմեդականները: Քաբբան հանդիսանում է աղոթատեղ, որը Աստված պատվիրել է կառուցել Աբրահամին և նրա որդուն, Իսմայելին:

Հաջի ավարտը նշվում է Այիդ Ալ-Ադհա տոնախմբությամբ, որը նշում են աղոթքներով: Սա և Այիդ Ալ-Ֆիթրը,տոնական օրեր են, որոնք հիշատակում են Ռամադանի ավարտը և հանդիսանում են Մահմեդական օրացույցի երկու տարեկան տոները:

(Լրացուցիչ տեղեկությունների համար խնդրում ենք այցելել www.islam-guide.com/ pillars կայքը):

[118] Տարածք, մոտ 15 մղոն հեռավորությամբ Մեքքայից:

# Իսլամը ամերիկայի միացյալ նահանգներում

Բավական դժվար է ընդհանրացնել Ամերիկյան Մահմեդականներին: Նրանք հանդիսանում են նորադարձներ, ներգաղթյալներ, բանվորներ և բժիշկներ: Այս բազմազան համայնքը միավորված է ընդհանուր հավատքով, որին աջակցում են մեծաքանակ մզկիթների համատարած ցանցը:

Մահմեդականները վաղ են ժամանել Հյուսիսային Ամերիկա: Տասնութերրորդ դարում, Հյուսիսային Ամերիկայում գոյություն ունեին շատ մահմեդականներ:

Շատ ամերիկացիներ են ընդունել Իսլամ: Նրանք տարբեր դասերից են. ունևոր և աղքատ, կրթված և անուսում: Այսօր, Ամերիկայի Միացյալ Նահանգներում հաշվարկվում է մոտ հինգ ու կես միլիոն մահմեդական:[119]

---

[119] Համաշխարհային Օրացույց և Փաստերի Գիրք 1996, Ֆամիգեթթի էջ.644

# Իսլամի լրացուցիչ տեղեկություններ

Եթե դուք ցանկություն ունեք Իսլամի լրացուցիչ տեղեկությունների, կամ, եթե դուք ունեք որևէ հարց կամ մեկնաբանություն, կամ ցանկություն ունեք ընթերցել այս գիրքը մեկ այլ լեզվով, ապա խնդրում ենք այցելել այս գրքի կայքը

www.islam-guide.com

Գրքի տպագրական տարբերակի համար խնդրում ենք այցելել

www.islam-guide.com/copies

Դուք նույնպես կարող եք կապ հաստատել տվյալ որևէ կազմակերպություններից մեկի հետ.

**1. Միացյալ Նահանգներում**

Հյուսիսային Ամերիկայի Իսլամական ժողով
3588 Փլիմութ Ռոուդ, Սյութ # 270, Անն Արբոր MI 48015 ԱՄ
Հեռ.(734) 528-0006- Ֆաքս (734 ) 528-0066
Էլ-կայք. IANA@IANAnet.org

Ամերիկայի Իսլամական Հիմնադրամ
PO BOX: 3415 Մերիֆիլդ VA 22116 ԱՄՆ
Հեռ. (703 ) 914-4982- Ֆաքս ( 703) 914-4984
Էլ.կայք: info@ifa.ws

Ալհարամեյն Իսլամական Հիմնադրամ
1257 Սիսկիյու Բուլվար համար 212 Աշլանդ OR 97520 ԱՄՆ
Հեռ.(541 )482-1116-Ֆաքս (541 ) 482-1117
Էլ. Հասցե: haramain@alharamain.org

Դար-ուս-Սալամ Իսլամական Տեղեկատվության Հաստատություն
5301 Էդջվուդ Ռոուդ, Քոլեջ Փարք, MD 20740-4623 ԱՄՆ
Հեռ. (301 )982-9463 - Ֆաքս ( 301) 982-9849
Էլ. Հասցե: iiid@islamworld.net

Սահմեդական Երիտասարդության Համաշխարհային ժողով
PO Box: 8096 Ֆոլս Չըրչ VA22041-8096 ԱՄՆ
Հեռ. (703 )820-6656 -Ֆաքս (703 ) 783-8409
Էլ. հասցե support@wamyusa.org

Ալ Ջումա Ամսագիր
PO Box: 5387, Մադիսոն WI 53705-5387 ԱՄՆ
Հեռ.(608)277-1855- Ֆաքս (608) 277-0323
Էլ. հասցե. info@aljumuah.com

Նշում. Խնդրում ենք այցելել www.islam-guide.com centers , մոտակայքում գտնվող Իսլամական կենտրոնների հասցեների համար:

**2. Կանադա**

Իսլամական Տեղեկատվության և Միջազգային Դավա Կենտրոն
1168 Բլուր Սթրիթ Ուեսթ, Տորոնտո, Օնտարիո M6H 1N1 Կանադա

Հեռ.( 416) 536-8433 -Ֆաքս ( 416) 536-0417
Էլ.հասցե: comments@islaminfo.com

**3. Միացյալ Թագավորություն**

Ալ-Մունթադա Ալ Իսլամի Կենտրոն
7 Բրիջիզ Փլեյս, Փարսոնս Գարդեն, Լոնդոն SW6 4HW, Միացյալ Թագավորություն
Հեռ. 44 (0207 ) 736 9060 – Ֆաքս: 44 ( 0207 ) 736 4255
Էլ. Հասցե: mintada@almuntada-alislami.org

Ջամիյաթ Իհայաա Մինհաջ Ալ-Սուննա
Po Box. 24 Իսփուիչ. Սուֆֆոլք IP3 8ED Միացյալ Թագավորություն
Հեռ. և Ֆաքս 44 (01473) 251578
Էլ. Հասցե. mail@jimas.org

**4. Սաուդյան Արաբիա**

Ալհարամեյն Իսլամական Հիմնադրամ
PO Box: 69606 Ռիյադ 11557 Սաուդյան Արաբիա
Հեռ.(966-1) 465-2210 Ֆաքս (966-1) 462-3306
Էլ. Հասցե haramain@alharamain.org

Մահմեդական Երիտասարդության Համաշխարհային Ժողով
PO Box. 10845 Ռիյադ 11443 Սաուդյան Արաբիա
Հեռ. (966-1) 464-1669- Ֆաքս (966-1) 464-1710
Էլ հասցե. info@wamy.org

Գրքի Մեկնաբանությունները և առաջարկությունները

Եթե դուք ունեք որևէ առաջարկություն կամ մեկնաբանություն կապված այս գրքի հետ, խնդրում ենք ուղղեք դրանք հեղինակին Ի.Ա Իբրահիմին

Էլ հասցե ib@i-g.org Հեռ.(966-1) 454-1065 Ֆաքս (966-1) 453-6842 PO Box 21679 Ռիյադ 11485 Սաուդյան Արաբիա

Նույնպես, եթե դուք ցանկություն ունեք ստանալ լրացուցիչ տեղեկություններ Իսլամի մասին, կամ, եթե դուք ցանկություն ունեք գրքի լրացուցիչ կրկնօրինակների, դուք կարող եք դիմել հեղինակին:

# Իսլամի հետագա ընթերցումը

Ճշմարիտ Կրոնը հեղ, Բիլալ Ֆիլիփս

'Սա է Ճշմարտությունը' հրատարակիչ Ալհարամեյն Իսլամական Հիմնադրամ

Ղուրանը և ժամանակակից Գիտությունը. Հեղ. Դոկտոր Մորիս Բուքեյլ, խմբագիր Դոկտոր Ա.Ա.Բ.Ֆիլիփս

Ընկալելով Իսլամ Աբդուլ Ալլա ալ-Մաուդուդի

Կյանքը Մահից հետո բրոշյուր, Մահմեդական Երիտասարդության Համաշխարհային Հիմնադրամ

Մահմեդականի Հավատքը հեղ. Մուհամմեդ Ալ- Ութայմին, թարգմանիչ Դոկտոր Մանեհ ալ-Ջոհանի

Սուրբ Ղուրանի Իմաստային Մեկնաբանությունը անգլերեն լեզվով հեղ. Դոկտոր Մոըհամմեդ Ալ Հիլալի և Դոկ. Մուհամմեդ Խան:

Գրքերի կրկնօրինակների կամ բրոշյուրների համար խնդրում ենք այցելել www.islam0guide.com/books կամ դիմեք վերոհիշյալ որևէ կազմակերպություններից մեկի հետ:

# Քաղվածք


- Աիրենս Ս.Դոնալդ 1988 Օդերևութաբանությունը Այսօր. 3-րդ հրատարակություն Սուրբ Պողոս, Արևմտյան Հրատարակչական Ընկերություն:
- Անդերսոն, Ռալֆ.Ջ. և այլոք. 1978 Արբանյակային Պատկերների կիրառությունը Եղանակային Վերլուծության և Կանխատեսության համար. Ժնև, Համաշխարհային Օդերևութաբանության Կազմակերպության Ծառայությունը
- Անթես, Ռիչարդ Ա. Ջոն Ջ. Քահիր; Ալիսթեյր Բ. Ֆրեզեր և Հանս Ա. Պանովսկի 1981, Մթնոլորտը 3-րդ հրատարակություն Կոլոմբիա. Չարլզ Ի. Մերիլ Հրատարակչական Ընկերություն
- Բարքեր.Քեննեթ և մյուսները. 1985 Նոր Միջազգային Ուսումնական Աստվածաշունչ, Նոր Միջազգային Տարբերակ. Գրանդ Ռափիդս, Միչիգան. Զոնդերվանի Հրատարակչատուն
- Բոդին, Սվանթե 1978 Եղանակը և Կլիման. Փուլ, Դորիսթ. Բլանդֆորդ Պրեսս Ընկ.
- Քալեուքս, Անդրե 1968 Երկրի Անատոմիան Լոնդոն Համաշխարհային Համալսարանական Գրադարան
- Քուփեր Հեթեր և Նիգել Հենբեսթ. 1995 Տարածաշրջանի Ատլաս. Լոնդոն Դորլինգ Քինդերսլեք Ընկերություն
- Դեյվիս, Ռիչարդ Ա կրտսեր. 1972 Օվկիանոսագիտության Սկզբունքները. Դոն Միլս, Օնտարիո, Ադդիսոն-Ուեսլեյ Հրատարակչական Ընկերություն
- Դուգլաս Ջ.Դ և Մերիլ Ս.Թեննի 1989 Նոր Միջազգային Տարբերակ Աստվածաշնչի հակիրճ բառարան: Գրանդ Ռափիդս,Միչիգան. Զոնդերվան Հրատարակչատուն:
- Էլդեր,Դեննի և Ջոն Թերնեթթա 1991 Օվկիանոսները Լոնդոն. Միտչել Բիզլի Հրատարակիչներ
- Ֆեմիգեթի Ռոբերտ 1996 Համաշխարհային Օրացույց և Փաստերի Գիրք 1996 Մահուահ, Նյու Ջերսի, Համաշխարհային Օրացուցային Գիրք
- Գրոսս Մ.Գրանթ 1993 Օվկիանոսագիտություն, Երկրի Տեսակետը 6-րդ հրատարակություն Էնգելվուդ Քլիֆֆս. Փրենթիս Հոլլ ընկ.
- Հիքման, Քլեվլենդ Փ. և մյուսները 1979 Կենդանաբանության Ամբողջական Սկզբունքները 6-րդ հրատարակչություն Սուրբ Լյուիս Ս.Վ Մոսբի Ընկերություն
- Ալ-Հիլալի, Մուհամմեդ թ. և Մուհամմեդ Մ.Խան; 1994 Սուրբ Ղուրանի իմաստային թարգմանությունը անգլերեն լեզվով 4-րդ վերանայված տարբերակ, Ռիյադ. Մաքթաբա Դար-ուս –Սալամ;
- Սուրբ Աստվածաշունչ, ներառում է Հին և Նոր Կտակարանները Վերանայված Տիպական Տարբերակ 1971 Նյու Յորք. Ուլիյամ Քոլինս Որդիներ և Ընկ.

- Իբն Հիամ, Աբդուլ-Մելիք: Ալ-Սիրաի Ալ-Նաբաուիյյաh: Բեյրութ, Դար Էլ-Մարիֆաh
- Իսլամական Գործերի Վարչություն, Սաուդյան Արաբիայի Դեսպանատուն, Վաշինգտոն, 1989 Ընկալել Իսլամը և Մահմեդականներին: Վաշինգտոն. Իսլամական Գործերի Վարչություն. Սաուդյան Արաբիայի Դեսպանատուն
- Քուենեն Հ.1960 Ծովային երկրաբանություն, Նյու Յորք.Ջոն Ուիլի և Որդիներ Ընկ.
- Լիսոն.Ս.Ռ. և Թ.Ս.Լիսոն 1981:Հիսթոլոգիա 4-րդ հրատարակություն, Ֆիլադելֆիա Ու.Բ Սաունդերս Ընկ.
- Լուդլամ Ֆ.Հ. 1980: Ամպերը և Փոթորիկները: Լոնդոն. Փենսիլվանիայի Պետական Համալսարանի Մամուլ
- Մաքքի, Աhմեդ Ա. և մյուսները: 1993 իիջազ ալ-Քուրան ալ-Քարիիմ Ֆի Ուասֆ Անուաա ալ-Ռիյադ, ալ-Սոhոբ, ալ-Մաթար: Մեքքա: Ղուրանի և սուննայի Գիտական Նշանների Կոմիտե:
- Միլլեր Ալբերտ և Ջեք Ս. Թոմսոն 1975: Օդերևութաբանության Տարրերը 2-րդ հրատարակություն Կոլումբիա: Չարլզ Ի. Մերրիլ Հրատարակչական Ընկերություն
- Մուր Քեյթ Լ, Ի. Մարշալ Ջոնսոն; Թ.Վ.Ն Փերսուադ; Ջերալդ Ս.Գորինգեր; Աբդուլ-Մեջիդ Ա.Զինդանի և Մուսթաֆա Ա.Աhմեդ 1992: Ղուրանի և Սուննայի մեջ զետեղված մարդկային զարգացումը: Մեքքա. Ղուրանի և Սուննայի գիտական նշանների կոմիտե
- Մուր Քեյթ Լ., Ա.Ա.Զինդանի և մյուսները. 1987 Ալ-Էջազ ալ-Ալմի ֆիի ալ-Նասիյաh (Գիտական Հրաշքները մեր առջև ) Մեքքա. Ղուրանի և սուննայի Գիտական նշանների Հանձնաժողով:
- Մուր Քեյթ Լ.1983 Զարգացող Մարդը. Գիտականորեն Ուսումնասիրված Սաղմաբանությունը, Իսլամական լրացումներով, 3-րդ հրատարակություն, Ջեդդաh. Դար Ալ-Քիբլաh
- Մուր Քեյթ Լ և Թ.Վ.Ն Փերսուադ, 1993 Զարգացող Մարդը, Գիտականորեն Ուսումնասիրված Սաղմաբանությունը 5-րդ հրատարակություն, Ֆիլադելֆիա Ու.Բ. Սաունդերս Ընկերություն.
- Էլ-Նազգար Զ.Ռ. 1991: Լեռների երկրաբանական ուսմունքը Ղուրանի մեջ 1-ին հրատարակություն, Հերնդոն. Իսլամական Մտքի Միջազգային Հաստատություն
- Նյուֆելդ Վ. 1994 Վեբսթերի Նոր Աշխարհի Բառարան: 3-րդ քոլեջի հրատարակություն: Նյու Յորք. Փրենթիս Հոլ.
- Բրիտանիկա Նոր Հանրագիտարան 1981, 15-րդ հրատարակություն, Չիկագո. Բրիտանիկա Հանրագիտարան Ընկ.
- Նոբաք, Չարլզ Ռ. Ն.Լ. Սթրոմինգեր և Ռ.Ջ.Դիմարեսթ. 1991 Մարդկային Նյարդերի Համակարգը, Ներածություն 4-րդ հրատարակություն Ֆիլադելֆիա. Լիա և Ֆեբիգեր
- Օսթրոգորսկի, Ջորջ. 1969 Բյուզանդական Պետության Պատմությունը. Թրգմանվել է Գերմաներենից Ջոան Հուսի:Վերանայված

Հրատարակություն Նյու Բրունսվիք. Ռութգերի Համալսարանական Մամուլ
- Փրեսս, Ֆրանկ և Ռայմունդ Սիվեր. 1982: Երկիրը, 3-րդ հրատարակություն, Սան Ֆրանցիսկո. Ու.Հ. Ֆրիման և Ընկ.
- Ռոսս. Ու. Դ. և մյուսները, 1963: Արիստոտելի Աշխատանքները, որոնք թարգմանվել են անգլերեն. Օդերևութաբանություն հատոր 3 Լոնդոն. Օքսֆորդ Համալսարանական Մամուլ
- Սքորեր Ռիչարդ և Հարրի Ուեքսլեր, 1963 Ամպերի Գունավոր Ուղեցույց: Ռոբերտ Մաքսվել.
- Սիիդզ, Մայքլ Ա. 1981 Հորիզոնները,Տիեզերքի Ուսումնասիրությունը: Բելմոնթ, Ուոդսուրթի Հրատարակչական Ընկերություն
- Սիիլեյ, Ռոդ.Ռ; Թրենթ Դ. Սթեվենս և Ֆիլիփս Թայթ. 1996: Անատոմիայի Հիմունքները և Հոգեբանություն 2-րդ հրատարակություն,Սուրբ Լյուիս. Մոսբի Տարեգիրք, Ընկ.
- Սիքս,Փերսի 1963: Պարսկաստանի Պատմությունը 3-րդ հրատարակություն, Լոնդոն. Մաքմիլըն և Ընկ.
- Թարբուք, Էդվարդ Ջ և Ֆրեդերիկ Ք.Լութգենս: 1982. Երկրագիտություն, 3-րդ հրատարակություն Կոլոմբիա: Չարլզ Ի. Մերիլ Հրատարակչատուն
- Թուրման, Հարոլդ Վ.1988: Օվկիանոսագիտության Ներածություն 5-րդ հրատարակություն, Կոլումբիա.Մերիլ Հրատարակչական Ընկերություն
- Վայնբերգ, Սթիվեն, 1984 Առաջին Երեք Րոպեները, Տիեզերքի Ծագման ժամանակակից Տեսակետ. 5-րդ տպագրություն, Նյու Յորք Բանթամ Գրքեր
- Ալ-Զարքաշի, Բադր Ալ-Դիին, 1990 Ալ-Բուրիան Ֆիի Օլում Ալ-Քուրան, 1-ին հրատարակություն Բեյրութ, Դար Ել-Մարիֆահ
- Զինդանի, Ա.Ա. 'Սա Է ճշմարտությունը', տեսանյութ: Մեքքա, Ղուրանի և սուննայի Գիտական Նշանները.

# Պատումների համարակալումը

Հետևյալ գրքի միջի պատումների[120] համարակալումը հիմնված է հետևյալ կերպ.

- Սահիհ Մուսլիմ. Ըստ Մուհամմեդ Ֆ.Աբդուլ-Բաքի հաշվարկի
- Սահիհ Ալ-Բուխարի. Ըստ Ֆաթհ Ալ-Բարի հաշվարկի
- Ալ-Թիրմիզի. Ըստ Ահմեդ Շաքերի հաշվարկի
- Մուսնադ Ահմեդ. Ըստ Դար Թիյա Ալ-Թարաթ Ալ-Արաբիի հաշվարկի, Բեյրութ
- Մովաթթա Մալիք. Ըստ Մովաթթա Մելիքի հաշվարկի
- Աբու Դաուդ. Ըստ Մուհամմեդ Մուհյի Ալ Դին Աբդուլ-Համիդի հաշվարկի
- Իբն Մաջահ. Ըստ Մուհամմեդ Ֆ. Աբդուլ-Բաքի հաշվարկի
- Ալ-Դարիմի. Ըստ Խալեդ Ալ-Սաբա Ալ-Ալամի և Ֆաուազ Ահմեդ Զամարլիի հաշվարկի.

[120] Պատումը հանդիսանում է Մարգարե Մուհամմեդի (Խ.Ա.Ո.Ն) խոսքերի և արարքների շարադրությունը վստահելի ուղեկցորդների կողմից: